50 ՏԱՐԻ







*Պատանի ընթերցող, 1967 թվականի նոյեմբերին լրանում է Հոկտեմբերյան հեղափոխության 50-րդ տարեդարձը, իսկ 1970 թվականի ապրիլին՝ կոմունիստական կուսակցության և մեր պետության հիմնադիր Վ. Ի. Լենինի ծննդյան 100 տարին:*

*Այդ նշանավոր տարելիցներին նվիրված բաժնում այսուհետև դուք հաճախակի կկարդաք նյութեր, որոնք կպատմեն մեծ առաջնորդի, նրա մարտական զինակիցների և այն փառավոր ուղու մասին, որով ընթացել է մեր ժողովուրդը՝ ձեռք բերելով պատմական վիթխարի հաղթանակներ:*

# ԲԱՐԻԿԱԴՆԵՐԻ ՎՐԱ

(Հատված «Ստեփան Շահումյան» վեպից)

*ՄԻՔԱՅԵԼ ՇԱԹԻՐՅԱՆ*

*Նկ. ՄԻՀՐԱՆ ՍՈՍՈՅԱՆԻ*

Սուրենը լսում էր կրակոցների ձայնը, գնդակների սուլոցը և մտածում. ուրեմն, այսպիսի՞ն է եղել մարտը:

Նա պատկերացրել էր այդ բոլորովին ուրիշ կերպ՝ ավելի հանդիսավոր և գեղեցիկ: Իսկ այստեղ ամեն ինչ մի տեսակ խառնափնթոր է, խճողված և անհասկանալի... Դու պառկած ես փողոցի սալահատակին, «Մաքսիմի» հետևը, ու կրակում ես ուր-որ դեպի առաջ: Վերջապես կրակում ես... Երկու ձեռքերով կառչում ես գնդացրի բռնակներից, ձախ բթամատով վերև ես հրում ապահովիչի փականը, իսկ աջ բթամատով սեղմում փշփշոտ մակերեսով շնիկը: Եվ գնդացիրը սկսում է ցնցվել, ագահորեն կուլ տալով ժապավենի փամփուշտները ու կրակի հետ միասին բալի կորիզների նման դուրս թքելով գնդակները... Իսկ դու աջ ու ձախ ես շարժում գնդացրի փողը, կրակ տեղալով փողոցի վրա... Գուցե և դրա կարիքը չկա, բայց որքան հաճելի է, որ դու վերջապես «կրակ ես տեղում» գնդացրից, ինչպես այդ նկարագրվում է պատերազմի մասին եղած գրքերում:

Հետո լսվում է դրուժինայի հրամանատար Բաթմանովի հրամանը. «Առա՛ջ»: Առաջինը ոտքի է ցատկում դրուժինայի կոմիսար Սերգո Մարտիկյանը, նրա հետևից՝ մյուսները, և կրակելով առաջ են նետվում... Եվ դու էլ նրանց նման ոտքի ես ելնում ու երկրորդ գնդացրորդի՝ Լուկինի [illegible] միասին քարշ ես տալիս գնդացիրը կլոր որձաքարերի վրայով, մինչև հետևյալ դիրքը: Հենց այդ ժամանակ էլ ամենից շատ են լսվում կրակոցներ, և գնդակները սուլում են ականջիդ մոտ... Մարմ-



նովդ սարսուռ է անցնում, և ստամոքսում ինչ-որ կծկումներ ես զգում, բայց, չնայած դրան, [illegible]ում ես ու վազում: Եվ դեռ մերթ ընդ մերթ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

Լույս է տեսնում 1923 թվականից



№ 2
ՓԵՏՐՎԱՐ
1966 թ.

նայում ես այն կողմը, որտեղ գտնվում է Լևոնը՝ փոքր եղբայրդ... Չէ՞ որ այդպես էլ չհաջողվեց ազատվել նրանից, կպավ պոչիցդ, եկավ բոլշևիկյան ջոկատում կռվելու, թեպետ ընդամենը տասնչորս տարեկան է և դեռ պարտիայի անդամ չէ...

Սակայն շարունակ այն կողմը նայել անկարելի է: Փողոցում ցեխ է, ամենուրեք լճակներ են, անցյալ գիշեր, կարծեմ, անձրև է եկել, թեպետ այն պահին ոչ ոք այդ չէր նկատում: Որովհետև գիշերը նույնպես կռիվ էր գնում, ու մթության մեջ ամեն ինչ ավելի սարսափելի և ահարկու էր թվում... Եվ եթե Բաթմանովի նոր հրամանը՝ «Պառկի՛ր», բռնեցնում է քեզ այդ լճակներից մեկի մոտ՝ այդպես էլ շրմփում ես նրա մեջ: Արագ շրջում ես գնդացիրը, սեղմում ես մի մատով՝ ապահովիչը, մյուսով՝ շնիկը, և նորից զգում գնդացրի տենդոտ դողը և տեսնում առջևում վազվզող մարդկանց...

Ահա և Նիկոլաևյան փողոցը: Վազեվազ անցան ռեալական ուսումնարանի մոտից: Այստեղ սովո-



րում են մի քանի ծանոթ տղաներ, հետաքրքիր է, ի՞նչ են անում հիմա նրանք: Նստած են տնե-րո՞ւմ, թե՞ նրանք էլ են կռվում Բաքվի փողոցնե-րում... Առջևում երևում է Ամրոցային հրապարակը: Քիչ այն կողմ գտնվող «Մետրոպոլ» հյուրանոցի կողմից դեպի ամրոցն է վազում մարդկանց մի խումբ, բայց պատուհաններից նրա վրա ուժեղ կրակ են բացում, և ամբոխը ետ է փախչում, ցրիվ գալիս...

Վերջին ցատկումով դրուժինան հասնում է փողոցի սալերից սարքած բարիկադին: Դրուժինայի մարտիկները խառնվում են բարիկադի հետևը դիրքեր բռնած կարմիրգվարդիականներին: Լսվում է մեկի ծանոթ ձայնը.

— Ա՛յ ապրեք, հենց ժամանակին հասաք, հիմա գրոհելու ենք բերդի վրա: Ամեն ինչ հարձակման թափից է կախված: Առանց ետ նայելու վազել մինչև դարպասները, նռնակներով պայթեցնել ու ներս...

Սուրենը ձգում է կարճ վիզը և վերջապես տեսնում խոսողին: Դե, իհարկե, դա Միկոյանն է: Նա հազիվ քսաներեք տարեկան է, բայց հայրիկիս նման բեղեր ու սեպաձև մորուք ունի: Նա հիմա նշանակված է կարմիր գվարդիայի ջոկատի հրամանատար: «Ամեն ինչ թափից է կախված»,— սա նրա սիրած խոսքն է: Մեշադի Ազիզբեկովը հիացած է նրանով, բայց հաճախ խրատում է. «Անաստաս, իմ կրակ, իմ բոց, մի քիչ հանդարտվիր»: Այնինչ Ջափարիձեն, ընդհակառակը, ուրախ քրքջում է. «Իմ տեսակիցն է... Հո՛ւպ տուր, Անաստաս»: Եվ միայն հայրիկն է, որ բազմանշանակալից ժպտում է բեղերի տակ. «Դուք հանգիստ կացեք, Անաստասը կրակոտ է, բայց աչքաչափ ունի»:

— Գնդացրորդնե՜ր... — կանչում է այժմ Միկոյանը: — Որտե՞ղ եք, գնդացրորդնե՜ր:

— Այստեղ ենք, քեռի Անաստաս:

— Ա՜, մեր երիտասարդական առաջնորդը,— Միկոյանը մոտենում է և գլխով անում գնդացրի կողմը: — Ո՞նց է, տիրապետե՞լ եք սրան:

— Օհո՜, այն էլ ոնց...

— Դե լավ է: Պաշտպանելու եք մեր գրոհը: Անդադար կրակի տակ պահեցեք պարսպի վերին եզրը՝ այնտեղ են գտնվում մուսավաթականների գլխավոր ուժերը: Կրակեցե՛ք, մինչև մենք հասնենք դարպասներին: Պա՞րզ է:

— Պարզ է, քեռի Անաստաս: — Եվ Սուրենը շտապ փոխում է գնդացրի գրեթե պարպված ժապավենը, որպեսզի կարողանա առանց դադարի երկար կրակել:

Միկոյանը վերադառնում է հրաձիգների մոտ և քիչ հետո լսվում է նրա հրամանը. «Առա՛ջ»: Սուրենը նշան է բռնում բերդապարսպի վերին եզրը և կրակ բաց անում: Սկզբում թվում է, թե նշանը բարձր է բռնել, բայց հետո նկատում է պարսպի ատամնաձև ցցվածքներից ցայտող այլուափոշին և քարի բեկորները... Նա այնքան է տարվում կրակելով, որ մի պահ չի լսում հրաձգության ժխորը, չի տեսնում ոչ դեպի բերդը վազողներին, ոչ էլ թշնամու գնդակներից վայր ընկնող մարդկանց... Եվ միայն ժապավենը վերջացնելուց հետո, հանկարծ նկատում է դեպի ետ վազող մարդկանց և նրանց մեջ՝ մեկ ոտքի վրա ցատկող Միկոյանին... «Վիրավոր է...»— անցնում է Սուրենի մտքով: Նա արագ քաշում է նոր ժապավենի ծայրը գնդացրի լցամասի մեջ և կրկին կրակ բացում:

— Ցա՛ծ, ավելի՛ ցած բռնիր,—բղավում է նրա ականջին Լուկիչը: — Հրակնատներին կրակիր, այնտեղից են նեղում մերոնց...

Սուրենը իջեցնում է գնդացրի փողն ավելի ցած, կրակելով աշտարակի հրակնատներին, մինչև որ վազողները պատսպարվեն քարե բարիկադի ետևը: Պատյանի անցքից գոլորշի է բարձրանում, և Սուրենը դադարեցնում է կրակը:

— Ի՞նչ եղավ,— բղավում է, որպեսզի ծածկի հրաձգության աղմուկը:

— Բան դուրս չեկավ,—պատասխանում է օգնականը: — Դու վերևիններին սեղմեցիր, բայց մերոնց հրակնատներից քրտնեցրին:

— Վա՛յ ես դրանց... Ուրեմն, գրոհը ձախողվե՞ց: Հապա պահիր իմ տեղը:

Սուրենը վազում է այն կողմը, որտեղ գտնվում է Միկոյանը: Սա արդեն նստել է քարին, մեջքով դեպի պարիսպը և, կոշիկը հանած՝ թաշկինակով կապում է ոտի վերքը: «Հիմա բարկանալու է վրաս»,— չգիտես ինչու, որոշում է Սուրենը, բայց այնուամենայնիվ մոտենում է Միկոյանին:

— Քեռի Անաստաս, վերքը լո՞ւրջ է:

Միկոյանը բարձրացնում է հայացքը Սուրենի վրա, և հակառակ սրա սպասածին, հանկարծ ժպտում է.

— Դատարկ բան է, կանցնի: Իսկ դու կեցցե՛ս, շատ լավ էիր կրակում:

— Ի՞նչ օգուտ, չէ՞ որ նրանք ետ մղեցին գրոհը:

— Այդ նրանից է, որ մենք ընդամենը երկու գնդացիր ունենք, կրակային պաշտպանությունը թույլ էր... Ախր այնտեղ նստած են «վայրենի դիվիզիայի» փորձված զինվորները...

— Հիմա ի՞նչ ենք անելու:

— Ի՞նչ: Գրոհով չեղավ՝ պաշարումով կվերցնենք... Դու հիմի պիտի հաշվով կրակես, կարճ հերթագարկերով, փամփուշտը խնայելով... Եվ շարունակ դարպասներին հետևիր, նրանք կարող են իրենք գրոհի անցնել:

— Լավ, քեռի Անաստաս.— Սուրենը շրջվում է, նորից վազում իր գնդացրի մոտ:

Ու հազիվ է հասցնում պառկել Լուկիչի կողքին, երբ գլխավերևը բուսնում են հսկայամարմին Անվարը և կարճլիկ Վահանը՝ հոր թիկնապահն ու շոֆերը:

— Սալամ, Սուրեն ջան, ո՞նց ես, սաղ-սալամա՞թ ես,— հարցնում է Անվարը հայերեն:

Իսկ Վահանը, առանց մի խոսք ասելու, պպզում է Սուրենի կողքին ու սկսում շոշափել տղայի ոտքերն ու ձեռքերը:

— Դե ողջ-առողջ եմ, բան էլ չի եղել ինձ,— ծիծաղում է Սուրենը:

— Ես ախպերդ՝ Լյովան հո՞ւնց ա,— հարցնում է Վահանը, գոհ զննության արդյունքներից:

— Նա էլ է ողջ-առողջ, հրեն այնտեղ է, ձախ կողմում: Իսկ դուք ինչի՞ եք եկել այստեղ:

— Ո՞նց թե «ինչի»,— զարմանում է Անվարը: — Որ իմանանք, թե ինչ հալի եք: Ախր հերդ բեզարմալ ա ըլում:

— Հայրի՞կը,— տարակուսում է Սուրենը: — Այդ նա՞ է ձեզ այստեղ ուղարկել:

— Չէ մի, էդ էր պակաս... Բաց եմ անում շտաբի դուռը, տեսնեմ՝ ընկեր Ստեփանը մեկի հետ տելեֆոնով խոսում ա, յանի, ոնց են բոլշևիկյան դրուժինայում գործերը, լավ են գնում, սպանված, յարալու շա՞տ են, թե՞ քիչ...

— Ու դուք վճռեցիք, որ այդ նա մեր մասի՞ն է հարցնում,— վրդովվում է Սուրենը:

— Իսկ ի՞նչ կա որ,— չի հասկանում Վահանը: — Նա մարդ չի՞, քարի՞ց ա սարքած:

Անվարը գլխով հավանության նշան է անում և շարունակում է.

— Ու ես էլ հենց որ էդ խոսքերը լսեցի, ասեցի Վահանին. «Քանի էստեղ սրանց գլուխները խառն ա, արի թռնենք էն յանը, մի խեր-խաբար բերենք ընկեր Ստեփանին»:

Սուրենը դժգոհ փնչացնում է, բայց ոչինչ ասել չի կարողանում: Նա ինքն էլ է հասկանում, որ հայրիկը, երևի, իրոք շարունակ իրենց մասին է մտածում, հուզվում, թեպետ, իհարկե, աշխատում է ցույց չտալ այդ:

— Իսկ ինչպե՞ս են մեր գործերը ուրիշ տեղե-



բում, — հարցնում է Սուրենը, խոսքը փոխելու համար:

— Լավ են, — պատասխանում է Վահանը: — Մենք, որ էստեղ էինք գալիս, տեհանք, որ ամեն տեղ մերոնք հաց են տալիս էդ մուսաֆաթներին...

— Մենակ ալ էստեղ, գալայի մոտը... — և Անվարը գլխով է անում դեպի անտառի բերդը:

— Էստեղ ի՞նչ... — փոքր ինչ հուզված գոչում է Սուրենը և կրկնում Միկոյանի խոսքերը: — Դրոհով չեղավ՝ պաշարումով կվերցնենք: Իսկ ծովայինները դեռ չե՞ն մասնակցում կռվին:

— Չէ, հալա տաք են ընում, — դժգոհ թափ է տալիս ձեռքը Վահանը:

— Տղերք, ավերք, դուք ա՞յն կողմը նայեք, — հանկարծ գոչում է Սուրենի կողքը պառկած Լուկինը:

Նոր միայն Սուրենը նկատում է, որ հրաձգությունը ամենուրեք դադարել է: Եվ վրա հասած արտասովոր լռության մեջ տեսնում է, թե ինչպես հակառակ կողմից Ամրոցային հրապարակ է դուրս գալիս ինչ-որ մեկը: Նա լայնեզր գլխարկով է, ու վերարկուով, ձեռքին՝ մի փոքրիկ ճամպրուկ, որը նա անփույթ ճոճում է... Քայլում է հենց ուղիղ հրապարակի մեջտեղով, առանց թաքնվելու, հանդարտ և հավասար քայլերով, ասես չի էլ իմանում, որ այստեղ կատաղի մարտ է տեղի ունենում... Ոչ ոք չգիտե, թե ով է նա՝ մուսավաթակա՞ն, թե՞ բոլշևիկ, թշնամի՞, թե՞ բարեկամ: Եվ զգացվում է, որ բոլորն էլ՝ թե՛ բարիկադի հետևը թաքնվածները, թե՛ բերդում նստածները, սպասում են, որ նա հիմա մի բան կասի կամ կանի... Իսկ նա գնում է, առանց քայլերը արագացնելու կամ դանդաղեցնելու, կտրում է հրապարակը և հանգիստ մտնում ինչ-որ տան կամարի տակ...

— Ա՛յ քեզ օյի՜ն, — հանկարծ ուշքի գալով, գոչում է Վահանը:

Բարիկադի մոտ հնչում է մարտիկների միահամուռ քրքիջը: Բոլորին թվում է, թե այդ մարդը մի լավ, բայց առանց չարության, ձեռք առավ նրանց, ովքեր այստեղ, չգիտես ինչու, կրակում են իրար վրա...

Բայց պատերազմը՝ պատերազմ է, և քիչ հետո հրապարակում նորից վերսկսվում է հրաձգությունը:

— Դե, լավ, գնանք Լյովիկին էլ տեսնենք ու ետ դառնանք, — ասում է Վահանը:

Երկու բարեկամները, հրաժեշտ տալով գնդացրորդներին, գնում են դեպի ձախ: Իսկ ավելի ուշ, երբ նրանք հեռանում են բարիկադից, տեղի է ունենում այն, ինչի մասին գուշակում էր Միկոյանը: Բացվում են բերդի պարիսպները և փափախ ու չերքեզկա հագած թաթարների մի մեծ խումբ գրոհի է նետվում դեպի բարիկադը: Եվ այնժամ Սուրենի ձեռքերում նորից կենդանի էակի նման սկսում է թպրտալ գնդացիրը, և նա տեսնում է, թե ինչպես վազողներից ոմանք ընկնում են, իսկ մյուսները դանդաղեցնում են քայլերը, ապա՝ շրջվում ու ետ վազում դեպի բերդը:

Եվ նորից հրապարակի վրա տարածվում է լռությունը, միայն մերթ ընդ մերթ խախտվելով հատուկենտ կրակոցներից:

Այդպես էլ մնում են նրանք՝ երկու թշնամի բանակները, միմյանց հաղթելու անկարող, և սպասելով, մինչև դրսից օգնությունը կողմերից մեկին գերակշռություն տա և հնարավոր լինի կոտրել հակառակորդի դիմադրությունը:

# Փաթիլները

ԳՈՒՐԳԵՆ ԱՍԼԱՄԲԱՅԱՆ

Մրսում են ձյունի փաթիլներն ասես,
Դողում, թրթռում, իջնում ակամա.
Սառած, հողմածեծ ծաղիկների պես
Նրանք արև են երազում հիմա։
Ասվակ են տենչում ուրախ զգացող.
Ամռան առավոտ, արտուներ կանաչ,
Երբ իրենք իբրև մի-մի կաթիլ ցող
Ծաղկի շուրթերն են համբուրում կամաց...
Ու ափսոսալով, կարծես ասում են.
․ Եկե՛ք միանանք...
Եկեք տաքանանք...
Իրար գրկելով մեղմ փփսում են
Ու երկիրն առնում հաստ վերմակի տակ.
Իրենք դողում են, իրենք մրսում են,
Բայց հողի կուրծքը միշտ պահում են տաք։

# Թե այդպես է՝ գտիր ինքդ

ՄԱՄԻԿՈՆ ԽԱՉԱՏՐՅԱՆ

Հայրը, գործից երբ եկավ տուն,
Փոքրիկ մի գիրք բերեց որդուն.
Տար ու կարդա, ասաց Սոսին,
Սա գրված է հենց քո մասին. -
Մաղրել էին այդ գրքի մեջ
Մի անկարգի՝ անունը Պերճ.
Ոտք էր դնում բակ թե դպրոց.
Նա սարքում էր տուրուդմբոց,
Խոսում էր միշտ կոշտ ու կոպիտ,
Ասես փախած լիներ կապից.
Նրան շատ էր նման Սոսը.
Կարծես լինեին նույն «հերոսը»
Բայց նա գրքից միտք չքաղեց,
Կարդաց թե չէ՝ կուշտ ծիծաղեց
Ու վազ տվեց հորը ասաց.
– Ուզում էիր խաբե՞լ, ասա՛,
Ի՛մ մասին է բա այս գիրքը.
Թե այդպես է՝ գտիր ինքդ.
Ես փնտրեցի երկա՜ր, երկա՜ր,
Իմ անունը այստեղ չկար։

# ՍՈՒԼԻՋՈՎ ՄԱՐԴԸ

ՌԱՖԱՅԵԼ ՆԻՐՅԱՆ

Մտքից չի գնում մեր հին տունը՝ քաղաքի կենտրոնում, խաչմերուկը՝ մեր տան առաջ, որտեղ միշտ կանգնում էր միլիցիայի սերժանտ Սերոբ Քայամյանը, որին մենք քեռի Սերոբ էինք ասում։ Հիմա էլ կանգուն է մեր հին տունը՝ սև տուֆաքարից շինված երեք հարկանի այդ շենքը։ Ամեն անգամ այդ տան մոտով անցնելիս հոգիս ալեկոծվում է։ Ասես կյանքիցս մի կտոր եմ այնտեղ թողել։ Ամեն ծառ ու թուփ, ամեն քար ու անկյուն մանկությունս են հիշեցնում։ Մանկություն... Ինչքա՜ն հիշողություններ են արթնանում, քաղցր, անմոռաց հիշողություններ։ Աչքիս առջև կարծես կենդանի ժպտում են ման կության ընկերներս...

...Ձյուն... Սահնակ ենք քշում... Ամեն մեկս ուզում է առաջ անցնել։ Հետո թափով դիպչում ենք իրար, թավալվում փափուկ ձյան մեջ։ Ձյունակոլոլ վեր ենք կենում իրար հրմշտելով ու նորից... Աղմուկ, ծիծաղ, ձյուն՝ փաթիլ-փաթիլ ու հեռվից՝ տատիկիս ձայնը.

Վահրա՛մ, տու՜ն եկ, բավական է...

Ու մի օր էլ դպրոցից վերադառնում եմ և ինչ. մեր իրերը մեքենային են բարձում։

Էս ի՞նչ է,- զարմացած հարցնում եմ եղբորս։

Նոր տուն ենք գնում, չգիտե՞ս,— ասում է։

Նոր տու՞ն...

Ու աղեկտուր լաց եմ լինում։ Խնդրում եմ հորս, խնդրում եմ մորս, տատիկիս, որ չգնանք, մնանք։ Ինչու՞ եմ լաց լինում, ինքս էլ չգիտեմ։ Մոտենում է տատիկը, սրբում արցունքներս ու փաղաքշելով մխիթարում է ինձ։

Գիժ, ասում է,- լավ տուն ենք գնում, սիրուն, արևոտ սենյակներ, էստեղ ի՞նչ կա, մութ, նեղված ք...

Ի՞նչ անենք։ Բա Ռուբիկը, Համիկը, Տոլիկը, Սուրիկը, Հասմիկը, հեկեկալով ասում եմ ես։

Այդ ե՞րբ էր... Վաղու՜ց։ Քառորդ դար է անցել... Ինչքա՜ն բան է փոխվել, քաղաքը, մարդիկ, ընկերներս... մեկը՝ քիմիկոս, մեկը՝ երգիչ, մյուսն՝ ինժեներ, իսկ ե՞ս։ Ես էլ եմ մեծացել, փոխվել։ Բայց հիմա էլ, կարծես, դեռ ականջիս հնչում են տատիկիս խոսքերը։

Գի՜ժ...

Խելացի տատիկ։ Ո՞ւր է նա։ Չկա։ Մեր հին տունը կա, փողոցը կա, աղմուկն ու եռուզեռը կա, տատիկը չկա։

Քեռի Սերոբն էլ չկա։ Որտե՞ղ է նա հիմա։ Այն օրվանից, որ մենք նոր տուն գնացինք, ես նրան չեմ տեսել, ինչքա՜ն եմ փնտրել, չեմ հանդիպել։ Ոտի տակ եմ տվել մեր բոլոր փողոցները՝ հին ու նոր, բայց նրան չեմ գտել։ Ամեն անգամ ինձ թվացել է, որ նա է խաչմերուկներում կանգնածը, բայց...

Առույգ, արագաշարժ, ազդեցիկ արտաքինով մարդ էր քեռի Սերոբը. նա մեր փողոցում կարգավորում էր երթևեկությունը։ Ամառվա շոգերից ու ձմեռվա ցրտերից թեթև սևացել էր նրա դեմքը։ Ձախ կողմից կախում էր կաշվե պայուսակ, աջից՝ ատրճանակ, իսկ ատրճանակի պատյանից ամրացված էր փայլուն շղթայով սուլիչը, որ քայլելիս ճոճվում էր։ Ճտքավոր կոշիկ էր հագնում, միշտ մաքուր, պլպլան։ Կարմիր երիզով գեղեցիկ գլխարկը իջնում էր մինչև սև հոնքերը։ Այդ ավելի խրոխտ ու արտահայտիչ էր դարձնում նրա արտաքինը։ Կարճլիկ, նաշխուն ցուցափայտ ուներ քեռի Սերոբը։ Դրանով նա ուղղություն էր տալիս ավտոմեքենաներին։ Նրա ձեռքի ռիթմիկ շարժումներին էին նայում վարորդները, կանգ առնում կամ առաջ գնում։

Երբ ես սկսեցի դպրոց հաճախել, շուտ-շուտ տեսնում էի քեռի Սերոբին։ Նրան տեսնում էի և մեր տան պատուհանից, որը բացվում էր ուղիղ փողոցի վրա։

Տնից շուտ էի դուրս գալիս, որ դասերից չուշանամ։ Հայրս էր պատվիրել։ Փողոց դուրս գալով, ես, գրքերի պայուսակը ձեռքիս, երբեմն կանգնում և հափշտակված նայում էի, թե ինչպես քեռի Սերոբը մի պահ կանգնեցնում ու



նորից շարժման մեջ էր դնում ավտոմեքենաները։

Այդ ինձ շատ էր դուր գալիս։

Սուր աչք ուներ քեռի Սերոբը։ Փողոցում ինչ անկարգություն էլ լիներ, նա նկատում էր ու միջամտում։ Եթե մեկը փողոցն անցնում էր ոչ սահմանված տեղից, նա սուր, ծիգ սուլոցով կանգնեցնում էր կարգը խախտողին, ետ դարձնում մայթ և ցույց տալիս անցման տեղը։ Երբեմն էլ մոտենում էր կարգը խախտողին, ոտից-գլուխ չափում և շեշտակի նայելով աչքերին, ասում.

Ջեղա՛վ, քաղաքացի, խախտում եք փողոցի կարգը։ Ե՛տ դարձեք։

Ու ետ էին դառնում՝ լուռ, գլուխները կախ։ Պատահում էին և զոռոզ, մեծամիտ մարդիկ, հակառակվում էին, վիճում, չէին ուզում փողոցի կեսից ետ դառնալ։ Հազար ու մի պատճառ բռնում։ Ոմանք էլ.

- Սխալվել եմ,— ասում էին։

- Է՛, չի լինի՞, որ չսխալվեք,—պատասխանում էր քեռի Սերոբը։

Քեռի Սերոբը չէր սիրում, երբ մարդիկ հակառակվում, կողքի էին ընկնում։ Այդ պահերին նա պայուսակից հանդարտ հանում էր մի փոքրիկ գրքույկ, արագ գրում և զինվորական պատիվ տալով ասում.

— Տուգանք՝ փողոցի կարգը խախտելու համար, խընդրում եմ վճարեք։

Հիշում եմ, մի օր էլ ես ու Ռուբիկը քեռի Սերոբի սուլոցների տակ ընկանք։ Կինոյից ուշանում էինք, ուզեցինք վազելով փողոցն անցնել սլացող մեքենաների արանքով ու քիչ էր մնում մեքենաների տակն ընկնեինք, բայց չընկանք։ Մեզ սթափեցրին քեռի Սերոբի տագնապալի սուլոցները։

Այդ օրվանից քեռի Սերոբն աչքիս ավելի մեծացավ։ Ես սկսեցի հասկանալ, որ նա մեզ համար է չարչարվում, դրա համար էլ խիստ է։ Ու ինձ թվաց, որ քեռի Սերոբը մեր փողոցի ամենաքաջ ու ուժեղ մարդն է։ Եթե ամենաուժեղը չի, մտածում էի ես, ապա ինչո՞ւ բոլորը հնազանդվում են նրան՝ թե՛ մեծերը, թե՛ փոքրերը, թե՛ տղամարդիկ, թե՛ կանայք։ Ես այդ չէի հասկանում։ Մի օր, դպրոցից գալիս,

հարցրի Սուրիկին, որը տարիքով ինձանից քիչ մեծ էր:

— Ո՞վ է մեր փողոցի ամենաուժեղ մարդը,— ասացի ես:

— Սերգո Համբարձումյանը... Ուժ ՝եմ ասել է՛: Չորս հարյուր երեսունհինգ կիլոգրամ ծանրություն է բարձրացրել երկու ձեռքով... Հսկա է, հսկա՛,— հպարտությամբ ասաց նա:



Նկ. Ա. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

Իսկ ես ասում եմ, որ ամենաուժեղը քեռի Սերոբն է:

— Մեր խաչմերուկի միլիցիոնե՞րը: Խելքի պուտուկ. Սերգո քեռին նրան մի ճկույթով շուռ կտա:

— Չի կարող:

— Կարող է: Սերգո քեռին ֆաշիստ Մանգերին է հաղթել: Գիտես: Աշխարհի չեմպիոնը հիմա ինքն է:

Տաք-տաք վիճելով մենք շարունակեցինք ճանապարհը: Ոչ մեկս մյուսին չզիջեց: Մոտեցանք խաչմերուկին: Քեռի Սերոբը բարկացած խոսում էր մի ավտովարորդի հետ, որը ուզեցել էր առաջ անցնել ու խփել էր տաքսի մեքենային: Ցնցումից վնասվածքներ էր ստացել նրա մեջ նստած տարեց կինը: Մարդիկ խռնվել, խումբ-խումբ խոսում էին կատարվածի մասին: Խաչմերուկի չորս կողմերից ավտոմեքենաները իրար հետևից շարվել սպասում էին: Քեռի Սերոբը մի պահ ընդհատեց խոսակցությունը և հերթով ազդանշաններ տվեց: Երբ մեքենաները դանդաղ շարժվեցին, նա նորից դարձավ կարգը խախտած վարորդին: Ես ու Սուրիկը լուռ դիտում էինք տեսարանը: Երբ ամեն ինչ խաղաղվեց, մենք միասին անցանք փողոցը, և մեր դռան մոտ նորից ես հարցրի նրան.

—Սերգո քեռին, որ ասում ես, հսկա է, կարո՞ղ է փողոցի շարժումը կանգնեցնել:

— Ով էլ միլիցիոներ լինի՝ կկանգնեցնի: Դու էլ միլիցիոներ լինես, կկանգնեցնես: Էստեղ ուժի ի՞նչ բան կա, խելքի պուտուկ,— ծիծաղելով ասաց նա ու ավելացրեց.— Դմբո ես, դմբո, ուշ ես հասկանում:

Մենք բաժանվեցինք: Սուրիկի խոսքից վիրավորված՝ ես անտրամադիր տուն մտա: Այդ իսկույն նկատեցին տնեցիները:

— Էլի ի՞նչ է պատահել,— հարցրեց հայրս, որ նոր էր աշխատանքից եկել և պատրաստվում էր ճաշի նստել:

— Ինչ պիտի,— ասացի ես:

— Ճիշտն ասա, ինչու՞ ես թթվել:

— Սուրիկն ինձ ասաց «դմբո»:

— Ինչի՞ համար ասաց «դմբո»:

— Վիճեցինք...

Ճաշի սեղանի շուրջը ես հորս պատմեցի ամբողջ եղելությունը. նա ուշադրությամբ լսում էր և մեկ-մեկ գլուխն օրորելով ժպտում: Երբ ճաշը ավարտվեց, հայրս նստեց բազմոցին և ինձ իր մոտ կանչեց: Գլուխս սիրալիր շոյելով ասաց.

— Սուրիկը իզուր է քեզ վիրավորել: Երկուսդ էլ ճիշտ եք. դու էլ ճիշտ ես, Սուրիկն էլ:

— Ինչպե՞ս,— ուրախ բացականչեցի ես:

— Մեր միլիցիոները, կամ ինչպես դու ես ասում, քեռի Սերոբը, օրենքի մարդ է, իսկ օրենքին ենթարկվում են բոլորը: Սերգո Համբարձումյանի գործն ուրիշ է, նրա ուժը մկանների մեջ է:

— Իսկ Սերգո քեռին կարո՞ղ է փողոցի շարժումը կանգնեցնել,— հարցրի ես:

— Իրավունք չունի: Նա միլիցիոներ չի. ժողովուրդը, իշխանությունը այդ իրավունքը քեռի Սերոբին են տվել: Եվ նա երդում է տվել, որ կարգ ու կանոնը լավ կպահպանի, թեկուզ կյանքի գնով, պա՞րզ է:

— Պարզ է,— ասացի ես ու կարծես մի ծանր բեռից թեթևացած՝ տնից դուրս թռա:

Ուզում էի հանդիպել ընկերներիս ու բաժանել նրանց հետ ուրախությունս: Բակում ոչ մեկին չգտա, վազեցի փողոց: Այն ինձ թվաց սովորականից անհանգիստ ու աղմկոտ: Դղրդալով անցնում էր տրամվայը, անցնում էին ավտոբուսներ, իրար

պոչից կպած ապրանքատար և մարդատար ավտոմեքենաներ: Մայթերով ալիք-ալիք իջնում կամ բարձրանում էր մարդկանց բազմությունը, իսկ խաչմերուկում դարձյալ քեռի Սերոբն էր, մի փոքրիկ երեխայի ձեռքից բռնած: Երեխան լաց էր լինում ու «մամա» կանչում: Ու՞մ երեխան էր, ինչպե՞ս էր ընկել այդտեղ: Այս հարցերը իրար հետևից անցան մտքովս: Ես մոտեցա ու մայթի եզրին կանգնած նայում էի: «Կարող է մեր բակի երեխաներից լինի», մտածեցի ես: Բայց չէ: Լիք-լիքը թշերով, կարճլիկ շալվարով տղա էր: Քիչ հետո քեռի Սերոբին մոտեցավ մի ավտոմեքենա ու կանգ առավ: Քեռի Սերոբը գրկեց երեխային և, հանձնելով ավտոյի մեջ նստած մի ուրիշ միլիցիոների, ասաց.

— Առաջին քաղաքամաս, ես զգուշացրել եմ: — Եվ պատիվ տալով փակեց ավտոյի դուռը:

Մեքենան շարժվեց: Քեռի Սերոբը մի պահ նայելով հեռացող մեքենայի հետևից, սկսեց դանդաղ ետ ու առաջ անել փողոցի մեջտեղով: Նրա դեմքին գոհունակության ժպիտ կար:

Ես երկար նայում էի քեռի Սերոբին, նրա սևեռուն հայացքին, խրոխտ շարժումներին և մըտքումս կրկնում հորս խոսքերը.

— Ահա նա, օրենքի մարդը, կարգ ու կանոնի պահապանը:

# Արջն ու նապաստակը

ՍԱՂԱՄՈՆ ՄԿՐՏՉՅԱՆ

Զարթնեց արջը մի օր քնից,
Վեր կացավ, որ դուրս գա բնից,
Տեսավ սաստիկ ձյուն է եկել
Ու քարայրի դուռը փակել:
Բրդոտ ափերն էլ ի՞նչ աներ,
Ձմռան համար պաշար չուներ,
Պիտի պառկեր ցուրտ քարայրում,
Թաթը ծծեր մինչև գարուն:

Ձյունը մի կողմ քաշեց թաթով,
Դուրս նայեց նա խոր կարոտով,
Մեկ էլ ինչ-որ բան նկատեց
Ու զարմանքը իրեն պատեց:
Պստիկ-նստիկ մի նապաստակ,
Աչքերն ասես կայծ ու կրակ,
Ինչպես ազատ սարերի հողմ,
Սլանում էր այս կողմ, այն կողմ:
Մեկ բլուրն էր ելնում կայտառ,
Մեկ գլխիվայր փախչում անտառ,
Մեկ կորչում էր նա ձյան շեղջում,
Մեկ էլ նորից դուրս էր թռչում:

— Էյ հե՜յ,— գոռաց արջը,— շլդի՛կ,
Հապա մի շուտ արի մոտիկ:
Ի՞նչ ես այդպես լեղապատառ
Վազում բլուր, իջնում անտառ:
Գա՞յլ ես տեսել, արդյոք, թե՞ շուն,
Այդ ումի՞ց ես փախչում, ումի՞ց...
— Ո՛չ, արջ ապեր, ի՜նչ եմ մարզում,
Որ չսառչեմ ցրտից, ձյունից:
— Հը՜մ, ա՛յ թե ինչ... իսկ ես ահա
Դողդողում եմ ուռենու պես:
— Դրանից է, ո՛վ աժդահա,
Որ դու իսկի չես մարզում քեզ
Եվ ամառվա սաստիկ շոգին
Մաս ես գալիս քուրքը հագին:
— Իսկ ի՞նչ պիտի ուտես, շլդի՛կ,
Մի՞թե ունես ձմռան պաշար:
— Ես կհանեմ ձյունի տակից
Թարմ ճակնդեղ, կաղամբ, գազար...
— Ապրե՛ս, ապրե՛ս... թեև պստիկ,
Բայց ժիր ես դու և համարձակ:
Էլ չեմ ասի վախկոտ շլդիկ,
Այլ կասեմ քեզ քաջ նապաստակ:



ԽԱԺԱԿ ԳՅՈՒԼՆԱԶԱՐՅԱՆ

# ԱՆՏԵՍԱՆԵԼԻ ՍՏՎԵՐՆԵՐ



ԳԼՈՒԽ ՏԱՍՆԵՐԿՈՒԵՐՈՐԴ

## ՍԱՐՍԱՓԵԼԻ ՀԱՅՏՆՈՒԹՅՈՒՆՆԵՐ

Սարսափահար խրվում էինք այս տարօրինակ պատմության մեջ: Թաղում ոչ մի երեխա այնպիսի գաղտնիքներ չգիտեր, ինչպիսիք մենք իմացել էինք պատահաբար: Դա մեզ դուր էր գալիս, բայց և սարսափեցնում էր: Անծանոթ մարդու և էշերի կոշկակարի գիշերային զրույցը գինետան փողոցում, ցնցել էր մեզ: Մենք հասկացել էինք, որ ավելի մեծ ոճրագործություն էր պատրաստվում, քան թե կարող էինք ենթադրել: «Լակոտը», որի մասին ակնարկեց անծանոթը, ուրիշ մարդ չէր կարող լինել: Դա մեր Ռուբենն էր՝ իմ դասընկերը: Մենք ուրախ էինք, որ նա չէր լսել սոսկալի խոսակցությունը, չէր իմացել, որ ոչ միայն Յոլակը, այլև հենց ինքն էլ Վարդուշի հարազատ որդին չէ, չէր էլ իմացել, որ իրեն ուզում են գողանալ, Վարդուշի կամքը կոտրելու, նրանից ինչ-որ բան կորզելու համար, մի բան, որ ամբողջ հիսուն հազար ռուբլի ավելի փող արժեր...

Տարօրինակ էր: Մեր ամբողջ թաղի տներն ու կահկարասին, թվում է, այդքան չարժեին: Ես լավ էի հիշում, որ երբ մաշակար Երեմն ու հայրս զրուցում էին մորս «բոյանայլու» մասին, Երեմն ասաց.

— Աննման բան է, հազարավոր ու թուման արժենա:

— Տասը, — ուղղեց հայրս:

— Տա՞սը, — զարմացավ Երեմը, — ես տանս իր թուման ու կես եմ տվել:

Երեմի տունը, որ մեր ու Վարդուշի տնից ոչնչով պակաս չէր, արժեր ընդամենը հինգուկես թուման, այսինքն հիսունհինգ ռուբլի: Իսկ այս-

---

Սկիզբը՝ 1965 թ. №№ 8—12, 1966 թ. № 1

տեղ խոսքը հիսուն հազարի մասին է: Ի՞նչ կարող էր ունենալ հաշմանդամ ատաղձագործը հիսուն հազարի արժողությամբ:

— Անգին քար կլինի, — ասաց Կարոն:

— Պարզ է, — համաձայնեցի ես:

— Հետո՞:

— Ոսկի:

— Քանի գնում՝ այնքան բարդանում է, — ասաց Կարոն, — հիմի ի՞նչ մարդ է Վարդուշը:

— Դե, որ անունը փոխել է, կնշանակի դավաճան է:

— Ինչ դավաճան, քա դավաճանը երկու որբ կպահի՞:

— Այն էլ ո՞նց է պահում, — համաձայնեցի ես, — մեր թաղում Ռուբենի նման ապրող տղա չկա:

— Հիշու՞մ ես, թե Ռուբենն ինչ էր ասում. «Նա ինձ մատով կպած չկա ու միշտ իմ խնդրածն անում է»:

Մեր ուղեղները ունակ չէին լուծելու այդ առեղծվածը, բացի այդ հիմա դրանով զբաղվելու ժամանակն էլ չէր: Հարկավոր էր մի բան անել: Մենք, իհարկե, կարող էինք գնալ միլիցիայի բաժանմունք, այդ երկհարկանի տանն ամբողջ գիշեր հերթապահներ էին լինում: Բավական էր, որ նրանց պատմեինք էշերի կոշկակարի երկու զրույցների մասին, մեկը՝ Վարդուշի, մյուսը՝ անծանոթ մարդու հետ: Պնչուկին տեղն ու տեղը կբռնեին: Բայց դա նշանակում էր ասել նաև, որ Վարդուշն իսկի էլ Վարդուշ չէ, որ նա թաքնված դավաճան է: Պարզ է, Վարդուշին էլ կբռնեին: Իսկ հետո... Ի՞նչ կլիներ մեր ընկերոջ՝ իմ դասընկերոջ վիճակը, որը, առանց այն էլ, սարսափելի հայտնություններից հետո դեղնում, չորանում էր աշնան տերևի նման...

Ոչ, միլիցիայի բաժանմունք գնալ չէինք կարող:

Մոլորված թափառում էինք մեր թաղի փողոցներում, մինչև ցուրտը հաղթեց...

Մայրս չէր քնել: Նա շատ էր անհանգստացել և որոշել էր «մի լավ դաս տալ ինձ»: Բայց, բառ երևալթին, իմ տեսքն այնքան ողորմելի էր, որ նա միայն մի անգամ մատնացույց կատարեց գլխով, կիսաձայն անիծեց «կապը կտրած» որդուն, որ «մի ժամ երեխա է» և «ծխնելույզից գիշերները էլ տուն չի գալիս», ու նեղացած ասաց.

Զայր տար է։

Ես ուտելու տրամադրություն չունեի, բայց տարա ժամանցի կապոցն ու մորս կիսաձայն անեծքը և նրա զարմացած հայացքի տակ գնացի դեպի անկողինս։

Զով էր, խոնավ, գետնին բացված անկողինը, բայց դրանից չէր, որ քունս չէր տանում։ Իմ գլխում խառնվում էին շփոթ մտքեր, ես արթմնի տեսնում էի էշերի կռիվները։ Մեկ նա դանակով սպանում է կնոջը, մեկ դանակը բարձրացրել է Վարդանի վրա, մեկ զգանում է Թորոսին՝ Վարդանից անգին քար կորզելու համար...

— Ի՞նչ ես շուռումուռ գալիս, — խոսավարում լսեցի մորս ձայնը. — Պերենիկ, հիվանդ ես չէ՞ս։

Նա ձեռքը դրեց ճակատիս։

— Չէ, հիվանդ չեմ, — ասացի ես։

Երանի հիվանդ լինեի, այս ամբողջ պատմությունը չլիներ։ Ես կպառկեի թախտի վրա ու նայելով կախչանքին հատկապես «հիվանդ բալայի» համար բարի մայրիկիս պատրաստած համեղ պատառները։

Իմ գիշերը տանջալից էր, բայց առավոտն՝ ավելի սարսափելի։



Նկ. ԳՐԻԳՈՐ ԽԱՆՋՅԱՆԻ

Լույսը դեռ նոր էր բացվել, երբ ինձ արթնացրեց Թորոսի սուլոցը։ Նա ինձ սպասում էր դրսում։

Զարկը քնած էր։ Հայրս, ըստ երևույթին, արդեն գնացել էր աշխատանքի (վաղուց հայտնի էր, որ Լանթարում դարբնագործ Միքայելի արհեստանոցն առաջինն էր բացվում)։ Իսկ մայրս ցախանոց էր իջել վառարանի համար փայտ բերելու։ Մի ակնթարթ տևեց հագնվելս, ես տանից դուրս թռա վերարկուս կոճակները կոճկելով։

Փողոցում, մեր պատուհանի տակ, սպասում էր Թորոսը։ Բայց մի՞թե Թորոսն էր դա։ Մի՛ գիշերվա մեջ նա այնքան էր փոխվել, որ ես նրան հազիվ ճանաչեցի. խոր ընկած աչքերը չորացել էին, ամբողջ մարմնով դողում էր ու անհնարին ճիգեր անում ասելու համար։

— Եկա, — ասացի, — էլ մի՛ ասիր։

Նա նայեց ինձ ու, թվում է, չճանաչեց։

— Թորո՞ս։

— Հա, գնա՛նք, — ասաց տարօրինակ ձայնով։

— Ո՞ւր։

— Գնանք Կարոյի մոտ։

Ինչ ուժ էր, որ առաջ էր տանում նրան։ Ես լար-լար ընկնելով հազիվ էի հասնում նրա հետևից։

Կես ժամ հետո մենք արդեն աղբյուրի մոտ էինք։ Ամբողջ ճանապարհին Թորոսն ինձ ու Կարոյին ոչինչ չէր ասել։ Աղբյուրի մոտ փռվեց։ Արցունք չէր գալիս, միայն ուսերն էին դողում ու մատները ցնցվում ջղաձգորեն։

— Ի՞նչ է պատահել, է՞, — արդեն քանիերորդ անգամ հարցրեց Կարոն։ Թորոսն ընդոստ նստեց։

Նրա կցկտուր ասածներից մենք շատ բան չհասկացանք, բայց ինչ էլ որ հասկացանք, զարհուրելի էր։

Դագաղ էր, ողբը, երեխայի դագաղ... Ես լուսադեմին զարթնեցի ձայներից... Հայրիկն իր անկողնում չէր։ Արհեստանոցից ձայն չէր լսվում։ Ես վախեցա, ձայն տվի, պատասխան չկար... Ես ֆրենչս գցեցի ուսերիս ու դուրս եկա պարտեզ... Դագաղ էր, իմ աչքով տեսա... Պատի մոտ, մեր մեծ թթենու տակ փոս էր փորած... Հայրիկն այդ դագաղն իջեցնում էր փոսի մեջ... Շունչս կտրվեց, ես տուն փախա ու անկողնում պառկած դողում էի... Շատ ժամանակ անցավ, մինչև նա եկավ, միջանցքում շորերի ձյունն էր թափ տալիս...

Կարկամել էինք։ Նույնիսկ Բաջ քաղաքն ասելու բան չգտավ...

(Շարունակելի)



# ԲԱԴԻԿՆԵՐԸ

ՎԱԶԳԵՆ ՏՈՆՅԱՆ

Ավտոբուսը ուժգին թափով՝
Թըռ-թըռ-թըռ-թը՜ռ.
Սլանում էր սահուն ճամփով՝
Դըռ-դըռ-դըռ-դը՜ռ...

Հանկարծ տեսավ՝ ուղիղ շարքով՝
Տըպ-տըպ-տըպ-տը՜պ.
Բադիկներն են անցնում կարգով՝
Թըփ-թըփ-թըփ-թը՛փ։



# ՓԻՍԻԿՆ ՈՒ ՄԿՆԻԿԸ

Մի անգամ փիսիկն ու մկնիկը միասին ճանապարհորդության են դուրս գալիս։ Ճանապարհին հանդիպում են մի փոքրիկ առվակի և չեն կարողանում մյուս կողմն անցնել։ Նրանք գտնում են մի փոքրիկ փայտիկ և գցում ջրի վրա։ Հետո փիսիկն ասում է մկնիկին.

— Մկնիկ, առաջ դու անցիր։

Սակայն մկնիկը վախենում է և ասում.

— Ոչ, փիսիկ, դու անցիր։

Եվ փիսիկն ուզում է անցնել։ Բայց հենց որ ոտքը դնում է փայտիկին, փայտիկը կոտրվում է և փիսիկը ջուրն է ընկնում։ Մկնիկը սկսում է ծիծաղել, այնքան ուժեղ է ծիծաղում, որ փորը պայթում է։ Մկնիկը շտապում է կոշկակարի մոտ և ասում.

— Կոշկակար, կարկատիր իմ խեղճ փորիկը։

Սակայն կոշկակարը պատասխանում է.

— Գնա ինձ համար խոզի մազ բեր, այն ժամանակ ես կկարկատեմ քո փորիկը։

Մկնիկը գնում է խոզուկի մոտ և խնդրում.

— Խոզուկ, տուր ինձ քո բիզ-բիզ մազերից, ես այն կտամ կոշկակարին, կոշկակարը կկարկատի իմ փորիկը։

Խոզուկն ասում է.

— Բայց դու ինձ համար նախ պետք է թեփ բերես։

Մկնիկը գնում է ջրաղացպանի մոտ.

— Ջրաղացպան,— խնդրում է նա,— ինձ մի քիչ թեփ տուր, ես այն կտանեմ խոզուկին, խոզուկն ինձ կտա իր բիզ-բիզ մազերից, մազերը կտանեմ կոշկակարին, կոշկակարը կկարկատի իմ խեղճ փորիկը։

Ջրաղացպանն ասում է.

— Մկնիկ, դրա համար դու պետք է հացահատիկ բերես։

ԳՐԻԳՈՐ ՅԱՂՋՅԱՆ

Նկարիչ՝ ՎԱՋԷ ԹԵՎԱՆՅԱՆ

# ԱՐԱՅԻԿԸ ԿԱԶԴՈՒՐՎՈՒՄ Է



Հայպետհրատ-Երևան



## ԳՈՐԾՈՂ ՏԻԿՆԻԿՆԵՐ

| | |
|---|---|
| ԱՐԱՅԻԿ | ԳԱՅԼ |
| ՇՈՒՇԱՆԻԿ | ԱՂՎԵՍ |
| ԳԱՌՆԻԿ | ՆԱՊԱՍՏԱԿ |
| ԱՆԱՀԻՏ | ՍԿՅՈՒՌԻԿ |
| ԱՆՏԱՌԱՊԱՀ ՊԱՊԻԿ | ԲՈՒ |
| ԱՐՋ | |

## ԳՈՐԾՈՂՈՒԹՅՈՒՆ ԱՌԱՋԻՆ

Բացատ՝ անտառում։

Գարնանային առավոտ։

Երկինքն արդեն լուսավոր է, անտառում՝ դեռ մութ։

Առաջինն արթնացել են ծիտիկները. ծլվլում են, լուսաբացը ավետում։

Ծառերից մեկի փչակում, արձանի պես անշարժ նստած բուն կրակ աչքերն է թարթում, չի կարողանում հաշտվել այն մտքին, որ գիշերն անցավ։

Վերջապես աչքերը բացեց և սկյուռիկը։

ՍԿՅՈՒՌ— (թափահարում է իրեն, հորանջում թաթիկներով դունչը սրբում, երկինքին նայում) *Լուսանում է։ Ափսոս, այստեղ դեռ լույս չէ, ընկույզները չեմ տեսնի... Փորձենք, փնտրենք, գուցե գտնենք...* (ոստոստում է ճյուղից-ճյուղ)։

ԲՈՒ— *Հու-փո՜ւ, հու-րո՜ւ, ընկույզակեր, քիչ վազվզիր. գլուխս սկսեց պտտվել։*

ՍԿՅՈՒՌ— *Օ՜յ, ինչ լավ է հանդիպեցինք, իշխան բու։ Շատ եմ խնդրում՝ ինձ օգնե՛ս։*

ԲՈՒ— (հեգնական)։ *Քեզ օգնե՞մ...*

ՍԿՅՈՒՌ— *Գիշերը հա՜մ դատարկ փորով քնեցի, վախենում եմ մինչև լույ՜սն անտառ մտնի, քաղցի՜ց սիրտս փո՜րս ընկնի։*

ԲՈՒ— *Իմ ի՞նչ գործն է, թե կընկնի։ Ես ձագերս չեմ կերակրում, որ մնաց քեզ։*

ՍԿՅՈՒՌ— *Հարկավոր չէ կերակրել. մթության մեջ լավ ես տեսնում, նստած տեղից ինձ ասա, ո՞ր ճյուղերին կա ընկույզ...*

ԲՈՒ— *Ա՜յդ էր պակաս... գնա՛ գործիդ, ես սովոր չեմ ուրիշներին ծառայել* (անհետանում է փչակում)։

ՍԿՅՈՒՌ— (զարմացած մտնում փչակին, բըզզուշությամբ ներս է նայում) *Այ քեզ բո՜ւ, օգնել անգամ չկամեցավ... Չեմ հասկանում, գործ անելը սովոր չէ, ընկերություն չգիտե, էլ ո՞ւմն է պետք անտառում...*

ՆԱՊԱՍՏԱԿ— (թփերի միջից գլուխը հանելով) *Բ-բարի լույս քը-քեզ, ափսոսակամաց ցը-ցերեկից...*

ՍԿՅՈՒՌ— *Քեզ էլ բարի, երկարականջ իմ քույրիկ։*

ՆԱՊԱՍՏԱԿ— *Չը-չգիտե՞ս, ինչ-չո՞ւ է մեզ կանչել...*

ՍԿՅՈՒՌ— *Ո՞վ է կանչել։*

ՆԱՊԱՍՏԱԿ— *Անտառապահ պ-պապիկը... ասել է, որ այս բ-բացատում հավաքվենք։*

ՍԿՅՈՒՌ— *Հապա ինչո՞ւ, ինձ ոչինչ չեն ասել...*

Անսպասելի հայտնվում է աղվեսը։ Սկյուռիկն ու նապաստակը լեղապատառ, ապահով դիրք են գրավում։

ԱՂՎԵՍ— *Բարի լո՜ւյս ձե՜զ, իմ սիրունիկ շուգիկներ...*

ՆԱՊԱՍՏԱԿ— (թեք հայացքով, կոճղերին նրան նայելով) *Մ-մենք շուգիկ չ-չենք, հասկացա՞ր...*

ԱՂՎԵՍ— *Դե, հիմարիկ, շուգիկ չե՞ք, ես այնպես՝ շատ սիրելուց...*

ԱՆՑՈՐԴ— Ինչ հանգի՛ստ թող, կներմոր:

ԱՂՎԵՍ— (խիստ զարմացած) Ես կներմո՞ր... Հայր աղվեսի արևո՛ւն եմ երդվում, որ ձեզ համար ‘ոտ յինկ պոչս կտրեմ... (շարժվելով դեպի սկյուռիկը) դու, օրինակ, ազնվական, իմ պոչազարդ թագուհի...

ԱՆՑՈՐԴՆԵՐ— Մի՛ մոտենա, սուտ ես (փախչում են, անհետանում):

ԱՂՎԵՍ— (նույնպես փախչել կամեցող նապաստակի ճանապարհը փակելով) Սպասիր, սպասիր, գեղեցկուհի նապաստակ, նախշուն դեմքդ ես տեսնեմ... (ծունկի իջնելով, աղերսախառն) Ինձ մի՛ զրկի էդ մեծ բախտից, թե չէ, այստեղ՝ աչքիդ առաջ, կսատկեմ...

ՆԱՊԱՍՏԱԿ— Սուս, քեզ գ-գիտեմ, սուտ ես խ-խոսում շ-շարունակ:

ԱՂՎԵՍ— (թաթը կրծքին խփելով) Ախ, ինչո՞ւ ինձ սրտացավները չեն սպանում, որ քեզանից այդ խոսքերը չլսեմ... Հավատացի՛ր դու. իմ հարազատ քրոջից ավելի եմ սիրում:

ՆԱՊԱՍՏԱԿ— Շ-շատ կուզեի իմ-մանալ, թե ինչ-չու...

ԱՂՎԵՍ— Վա՜յ, վա՜յ, վա՜յ, խեղճ իմ քույրիկ, որ արժեքդ չգիտես... Այդ քո սիրուն ականջները, բարա՜կ, երկա՜ր, մեջի կողմից վարդագու՜յն... այդ քո նուշ-նուշ աչիկները, որ տեսնում են թե՛ առջևում, թե՛ հետևում կատարյալ միրաչափ...

ՆԱՊԱՍՏԱԿ— (շոյանքից գլուխը կորցրած) Իմ-միս չչչ-չա՞փ...

ԱՂՎԵՍ— (թաթերն իրար զարկելով, սիրավառ) Թափի՜ր, խափի՜ր, քո բրդյան բաշդ լիզեմ ես մատո՜վ...

ՆԱՊԱՍՏԱԿ— (արդեն զիջողական) Թ-թե դ-դու ազնիվ չչչ-չինեիր...

ԱՂՎԵՍ— Մի՜ ասի, մի՜... սիրտս իզուր մի՛ կոտրի... (ներս է պտկում, քթաինքը սրբում) Լսիր, սիրուն վարսագ-նապաստակ, մարդուց ազնիվ արարած կա՞ աշխարհում:

ՆԱՊԱՍՏԱԿ— Չ-չէ, չկա:

ԱՂՎԵՍ— Նրանց մեջ էլ աղվես-մարդ է պատահում:

ՆԱՊԱՍՏԱԿ— Անհնար թ-թե հա, պատահում է, հետո ի՞նչ...

ԱՂՎԵՍ— Հետո այն, որ թե աղվես-մարդ պատահում է, մարդ-աղվեսն էլ կլինի:

ՆԱՊԱՍՏԱԿ— Ուրեմ-մըն դ-դու՞...

ԱՂՎԵՍ— Աղվեսների մարդ տեսակն եմ, պոչս մնում, թե խաբեմ... աչքի՛, աչքի՛, սիրելիս, թաթդ տուր ինձ, քույր ու եղբայր կդառնանք:

ՆԱՊԱՍՏԱԿ— (կոկետորեն մոտենալով) Տ-տես, թ-թե խաբես...

ԱՂՎԵՍ— Ես քեզ խաբե՞մ... (հանկարծակի հարձակվելով ու բռնելով նրան) Հա՜, երկարականջ հիմարիկ... (Մտնում է անտառապահ պապիկը, հրացանը ուսին):

ՊԱՊԻԿ— (աղվեսի ձեռքից նապաստակին ազատելով) Ա՜յ անպիտան, ի՞նչ գործի ես:

ԱՂՎԵՍ— Ե՞ս... հենց այնպես, ուզեցի կատակել:

ՆԱՊԱՍՏԱԿ— (մի կողմ քաշված, արտասվախառը) Ս-սուտ է, սու-սում. խ-խաբեց, թթթ-թե...

ԱՂՎԵՍ— (ընդհատելով նրան) Վա՜յ, վա՜յ վա՜յ, աչքի լույս պապիկս, չհավատաս դու նրան:

ՊԱՊԻԿ— Ձայնդ կտրի՛ ու կորի՛, հերիք է քեզ՝ սուտ խոսելով պտտվես, գործ անես սովորիր, որ ազնիվ կեր ճարես:

ԱՂՎԵՍ— Ես մի ժամ է, ինչ գործի եմ... Ծղրի-կից էլ անուշահամ կերակո՞ւր...

ՆԱՊԱՍՏԱԿ— (արտասվելով) Ախպա՜կ...

ԱՂՎԵՍ— Ասա, պապի, կարգին խոսի. սա ի՞նչ կյանք է. ով հանդում է, հայհոյում է... (դեմոնստրատիվ, բարձրաձայն հեկեկում է):

ՊԱՊԻԿ— (հրացանի փողը նրան ուղղելով) Ձայնդ կտրի ասացի:

ԱՂՎԵՍ— (միանգամից ձայնը կտրելով) Նայի՛ր, պապի, ով է գալիս: (Պապը նայում է ցույց տված կողմը, աղվեսն օգտվելով դրանից՝ լեղապատառ փախչում է անտառի խորքերը):

ՊԱՊԻԿ— (նայում է նրա հետևից, ծիծաղում) Մի տե՜ս, մի տե՜ս, ոնց է փախչում արի-կան... (Շոյելով նապաստակի մեջքը) Լավ, էլ արցունք հարկավոր չէ... Մյուս անգամ չհավատաս աղվեսին, որ կերակուր չդառնաս: (գոտուց կախված եղջյուրը դնում շուրթերին, փչում է անտառով մեկ):

Նախ՝ որպես պատասխան լսվում են գայլի ոռնոց, արջի մռթմռթոց ու այլ գազանների ձայներ. հետո մեկ-մեկ կամ խմբերով, բացատ են մտնում անտառի չորքոտանի բնակիչները:

ԳԱՅԼ— (մտնելով) Հա՜ու, Ուտե՜լ եմ ուզում... ոչխար բերե՞ք, գիշատեմ:

ԱՐՋ— Մռ՛թ-մռ՛թ-մռ՛թ... Մե՜ղր եմ ուզում, փեթակ լինեք ջարդեմ:

ԱՂՎԵՍ— (մյուսներից անկախ, մի անկյունում գլուխը թփերից հանելով, մեկուսի) Չլինի՞ թե պահապանը ուտելու բան բաժանելու միտք ունի...

ՊԱՊԻԿ— (նկածների ուշադրությունն իր՝ վրա

բռնելով) Ինձ լսեցեք, ամեն մեկդ ձեր տե-ղը նստեցեք:

ԳԱՅԼ— Հաու ու՜ ու... Փափո՜ւկ դմա՜կ եմ ուզո՜ւմ...

ԱՐՋ— (քթի տակ) Ա՜խ, մի փեթակ, առանց կծան ճանճերի...

ՍԿՅՈՒՌ— (մտնելով, նապաստակին) Աղվե՞սը հո մոտիկ չէ՞...

ՆԱՊԱՍՏԱԿ— Թ-թողեց փախավ որսկան:

ՍԿՅՈՒՌ— Արի նստենք իրար մոտ, ականջներս էլ սուր պահենք...

ԳԱԳԻԿ— (ընդհանուր, բարձրաձայն) Ով ուզում է իմանա, թե ինչու եմ ես կանչել, թող լավ նստի ու լսի... (բոլորը լռում են, նստում):

ԳԱՅԼ— Աու՜ ու ու...

ԲՈԼՈՐԸ— Սո՜ւս:

ԳԱԳԻԿ— (հարմար տեղ կանգնելով) Ուրեմն, լսեք, ինչպես գիտեք, բոլորդ էլ ինձ ճանաչում եք:

ԲՈԼՈՐԸ— Ճանաչում ենք, պահապան:

ԳԱԳԻԿ— Ես ձեր անտառն եմ պահպանում, ժամանակից շուտ ձեզ սպանել չեմ թողնում, թույլերին պաշտպանում եմ, ուժեղների ականջը քաշում:

ԲՈԼՈՐԸ— Ճիշտ է, ճիշտ է, մենք գիտենք:

ԳԱԳԻԿ— Շնորհակա՞լ եք ինձանից:

ԲՈԼՈՐԸ— Շնորհակալ ենք, շնորհակալ ենք, պահապան:

ԳԱԳԻԿ— Դե, թե ճիշտ եք ասում շնորհակալ եք, պետք է մի բան անեք ինձ համար:

ԲՈԼՈՐԸ— Ի՞նչ, ի՞նչ:

ԳԱՅԼ— Հաու՜ ու, համեցեք, մարդ պետք է հոշոտենք...

ԳԱԳԻԿ— Խելքդ ու միտքդ հոշոտելն է...

ԱՐՋ— Փայտ հավաքենք քեզ համար...

ԳԱԳԻԿ— Իմ ձեռքերը ջարդված չեն, որ իմ տեղն աշխատեք:

ԱՂՎԵՍ— (թաքստոցից դուրս գալով) Լավ է, այստեղ՝ անտառում մենք ապրենք, քան գազանանոց մեզ տանես...

ԳԱԳԻԿ— Նստի՛ր տեղդ, անպիտան, քեզ նման անկարգապահ աղվեսին գազանանոց չեն թողնի... (աղվեսը նստում է, պապիկը շարունակում է) Ուրիշ բան եմ խնդրելու... Հարկավոր է, մի տղայի կազդուրել...

ՁԱՅՆԵՐ— Կազդուրե՞լ... Դա ի՞նչ բան է, ասա, բոլորս կազդուրենք:

ԳԱԳԻԿ— (երկու ձեռքով նշան է անում, բոլորը մոտենում են) Ուրեմն լսեք. մեր գյուղն ամառանոց է եկել մի տղա... Խեղճուկի ա-նունն Արամ է, բայց մայրը նրան Արայիկ է կանչում:

Մթություն, մեղմ երաժշտություն: Լսվում է Արայիկի մոր՝ Շուշանիկի ձայնը. «Արայի՜կ... Արայի՜կ...» Լուսավորվում է գյուղական տան ծառազարդ բակը: Խնձորենու ստվերում թախտ կա: Արայիկը մեջքի վրա պառկել է թախտին, ձեռքերը գլխի տակ միացրել իրար ու անտարբեր՝ մոր կանչին, ինչ-որ անհոգ եղանակ է սուլում:

ՇՈՒՇԱՆԻԿ— (դրսից) Արայի՜կ... Արայի՜կ...

ԱՐԱՅԻԿ— (տան կողմը նայելով, դժգոհ) Հոգի հանեց... (Նախկին դիրքն ընդունելով՝ շարունակում է սուլել):

ՇՈՒՇԱՆԻԿ— (գալիս է, ձեռքին՝ դատարկ դույլ) Արայիկ... Չե՞ս լսում, որ կանչում եմ:

ԱՐԱՅԻԿ— (տեղում նստելով, հարձակողական) Ես ջրի չեմ գնա:

ՇՈՒՇԱՆԻԿ— Ոչ որ քեզ չի խնդրում ջրի գնալ: Անմիջապես վե՛ր ել, պատրաստվի՛ր. հիմա ջուր կբերեմ, կլվացվես ու կնստես նախաճաշելու:

ԱՐԱՅԻԿ— (դժգոհ, լացակումած) Լույսը բաց-վեց՝ կե՛ր, կեսօրին՝ կե՛ր, ճաշին՝ կե՛ր... Կե՛ր·





կե՛ր... կե՛ր... (արցունքները սրբելով, նորից պառկում է):

ԾՈՒՇԱՆԻԿ— (հուսահատ) *Ա՛ս ինձ կխելագարեցնի...* (Արայիկին) *Քեզ կազդուրվել է պետք, հասկանո՞ւմ ես, կազդուրվել: Նայիր հայելուն, տես ինչի՞ ես նմանվում:*

ԱՐԱՅԻԿ— (համառ) *Շատ լավ է:*

ԾՈՒՇԱՆԻԿ— *Տեսնո՞ւմ ես, Գառնիկն ինչքան առողջ տղա է, մի տարիքի եք, բայց մոտը կանգնելիս կարծես նրա ճուտը լինես: Գիտե՞ս ինչից է, նրանից, որ մայրն ինչ տալիս է, առանց նազուտուզի, ուտում ուտում է:*

ԳԱՌՆԻԿ— (երգելով դուրս է գալիս տնից, նկատում Ծուշանիկի ձեռքի դույլը) *Ի՞նչ է, ջո՞ւր է պետք, տուր բերեմ, մորաքույր:*

ԾՈՒՇԱՆԻԿ— *Չէ՛, չէ՛, Գառնիկ ջան, ես կբերեմ:*

ԳԱՌՆԻԿ— *Ա՞յդ էր պակաս... Տուր ես հիմա...* (Համարյա խլում է դույլը և երգելով շտապում բակից դուրս):

ԱՐԱՅԻԿ— (նրա հետևից նայելով) *Բոլորովին էլ ուժեղ չէ, այստեղի օդն է առողջարար...*

ԾՈՒՇԱՆԻԿ— *Հիմարություն, միայն օդով չես ապրի. 10 օր է այստեղ ես, ինչի՞ նույն կմախքն ես մնացել:*

ԱՐԱՅԻԿ— *Ավելի լավ է կմախք լինել, քան թե նրա նման փիղ... Իսկ ինքը ոտանավոր գրել գիտի՞...*

ԾՈՒՇԱՆԻԿ— *Ենթադրենք, թե չգիտի:*

ԱՐԱՅԻԿ— *Հա՛, տեսա՞ր...*

ԾՈՒՇԱՆԻԿ— (նկատելով ջրով լի դույլը ձեռքին վերադարձող Գառնիկին) *Ապրես, Գառնիկ ջան, տուր ինձ:*

ԳԱՌՆԻԿ— *Որտե՞ղ դնեմ:*

ԾՈՒՇԱՆԻԿ— *Տո՛ւր, տո՛ւր, ես ներս կտանեմ...* (Գառնիկը դույլը տալիս է նրան, Ծուշանիկը գնում է նրա հետևից, Արայիկին ասելով) *Դե արի՛, արի լվացվի՛ր, նախաճաշդ կսառչի:*

ԱՐԱՅԻԿ— (մենակ, տեղից չի շարժվում: Պառկած հորանջելով) *Ի՜հ... ամառանոցում էլ չեն թողնում մարդ հանգստանա... րոպեն մեկ լվացվիր, կարծես կատու լինեմ: Ոչ մի միկրոբ էլ չկա, սուտ է, չարչարելու համար են հնարել, ագռավները լվացվում են—չէ՛, իսկ ինչի՞ են լվացվողներից քանի անգամ ավել ապրում:*

ԳԱՌՆԻԿ— (տնից դուրս գալով) *Լսիր, դու ի՞նչ տեսակ տղա ես:*

ԱՐԱՅԻԿ— *Ի՞նչ տեսակ եմ:*

ԳԱՌՆԻԿ— *Ինչի՞ էր մայրիկդ գնում ջուր բերելու:*

ԱՐԱՅԻԿ— *Իսկ ո՞վ պիտի գնար:*

ԳԱՌՆԻԿ— *Դո՛ւ, ո՛վ...*

ԱՐԱՅԻԿ— *Ես զբաղված էի:*

ԳԱՌՆԻԿ— *Ինչո՞վ, մեջքիդ վրա պառկելո՞վ...*

ԱՐԱՅԻԿ— (կռվարար) *Իսկ դու կարծում ես ոտանավոր գրելը հե՞շտ է... Խնդրեմ, արի իմ տեղը մի ամբողջ օր մեջքիդ վրա պառկիր, թե չորս տող իրար կապեցիր՝ ամոթ ինձ:*

ԳԱՌՆԻԿ— *Մենակ դո՞ւ կարող ես կապել:*

ԱՐԱՅԻԿ— *Իսկ ի՞նչ էիր կարծում...* (Փորփրում, բարձի տակից թղթի կտոր հանելով) *Խնդրեմ, աչքդ մտցրու, այսօր եմ գրել... Կարդա, կարդա...*

ԳԱՌՆԻԿ— *Ինքդ կարդա, քո գրածը դու ավելի լավ կկարդաս:*

ԱՐԱՅԻԿ— *Լսի՛ր* (կարդում է պաթոսով).

*Ա՜խ, երանի՜, երանի՜,*
*Ծառից խնձոր ցած ընկնի,*
*Երկու կեսի բաժանվի*
*Ու ինքնիրեն մարսվի...* (լռում է):

ԳԱՌՆԻԿ— *Հետո՞...*

ԱՐԱՅԻԿ— *Դեռ այսքանն եմ գրել... Ի՞նչ է, լավը չէ՞...*

ԳԱՌՆԻԿ— *Շատ լավն է, բայց կիսատ է: Մի երկու տող էլ է հարկավոր:*

ԱՐԱՅԻԿ— *Ի՞նչ երկու տող:*

ԳԱՌՆԻԿ— (շարունակում է նրա ոճով)

*Որ բերանդ լայն բանաս,*
*Առանց ծամել դու կուլ տաս...*

ԱՐԱՅԻԿ— (վիրավորված) *Ես էդ չեմ ուզեցել ասել, միրգ հավաքող ավտոմատ մեքենա հնարելու մասին է խոսքս... Բայց լսիր, լավ հարմարեցրիր* (մատների վրա վանկերը հաշվելով) *որ բերանդ լայն բանաս, առանց ծամել դու կուլ տաս... Շատ ճիշտ է, ամեն տողում յոթ վանկ... Չէ, դու այնքան էլ անշնորհք չես...*

ԾՈՒՇԱՆԻԿ— (դրսից) *Արայի՜կ... Արայի՜կ...*

ԱՐԱՅԻԿ— (դեպի ձայնը) *Գալի՜ս եմ... Լսի՛ր, Գառնիկ, արի մենք...*

ՇՈՒՇԱՆԻԿ — (դրսից) Արայի՛կ...

ԳԱՌՆԻԿ — Գնա տես մայրիկդ ինչ է ասում, հետո կասես մենք ինչ... Ես էլ մի առաջարկ ունեմ։

ԱՐԱՅԻԿ — Ի՞նչ առաջարկ...

ՇՈՒՇԱՆԻԿ — (դրսից) Արայի՛կ...

ԱՐԱՅԻԿ — Սպասեք, էլի... տե՛ս, տեղ չգնաս, հիմա գալիս եմ (գնում է տուն)։

ԳԱՌՆԻԿ — (նրա հետևից նայելով, մտախոհ) Էսպես էլ պարկո՞ւ... Որ թողնեն սաղ օրը մեջքի վրա պառկի... (Տնից դուրս եկող իր մորը՝ Անահիտին) Մա՛, մորաքույրի հետ խոսեցի՞ր։

ԱՆԱՀԻՏ — Խոսեցի, որ ուզում ես հետդ տանես տունկ հավաքելու։

ԳԱՌՆԻԿ — Ուրիշ ոչի՞նչ...

ԱՆԱՀԻՏ — Մնացածը ձեր գնալուց հետո, հիմա սանդ կխախտենա, չի թողնի։

ԳԱՌՆԻԿ — Իսկ առանց ինձ, ընկ. Լամեզ դժվար չի՞ լինի, մա...

ԱՆԱՀԻՏ — Չէ, բալիկ ջան, դու հանգիստ գնա... տար տղային, թող անտառի օդը շնչի, որ կազդուրվի։

ՆԱՊԱՍՏԱԿ — (ներս է վազում, ցցվում նրանց դեմ) Բ-բարի լույս ձ-ձեզ... բ-բարի լույս ք-քեզ, Գ- Գառնիկ թ-թոռնիկ, մ-մեր պահապան պ-պապիկն ասաց, որ ամ-մեն ինչ ա-տեղն է արդեն, թ-թե-պ-պատրաստ եք, ճ-ճամփա ընկնենք, կ-կազդուրելը սկսենք։

ԳԱՌՆԻԿ — (շոյելով նրան) Շնորհակալ եմ, գազանների Նապիկ քույրիկ, ասա՛ պապին, որ քիչ հետո դուրս կգանք։

ՆԱՊԱՍՏԱԿ — Ասեմ, թթոռնիկ, ինչ որ ասիր, ես կասեմ (ուզում է գնալ)։

ԱՆԱՀԻՏ — Սպասիր, Նապիկ։ (Մարգից գազար է հանում, նրան մեկնում) Ա՛ռ, կկրծես ճանապարհին, գիտեմ, որ շատ ես սիրում։

Նապաստակը նազանքով ու դանդաղ մոտենում է, հանկարծ խլելով գազարը՝ դուրս է փախչում։ Մայր ու տղա ծիծաղում են նրա հետևից։

ԱՐԱՅԻԿ — (բերանը սրբելով՝ դուրս է գալիս տնից) Մորաքույր, մայրիկն ինչ-որ բան է փնտրում, չի գտնում, խնդրեց գնաս տեղը ցույց տաս (Անահիտը գնում է)։

ԳԱՌՆԻԿ — Կերար, պրծա՞ր...

ԱՐԱՅԻԿ — (հոգոցով) Ի՞նչ օգուտ, մի ժամ չանցած, նորից է հոգիս հանելու։

ԳԱՌՆԻԿ — Լսիր, գիտե՞ս ինչ էի ուզում քեզ առաջարկել։

ԱՐԱՅԻԿ — (պառկելով թախտին) Ի՞նչ... ասա, ասա, ես պառկած ավելի լավ եմ լսու՛մ։

ԳԱՌՆԻԿ — Արի գնանք անտառ տունկ հավաքելու։

ԱՐԱՅԻԿ — Իսկ դա ի՞նչպես են անում։

ԳԱՌՆԻԿ — Շատ հասարակ. տունկը զգուշությամբ պոկում ես, դնում զամբյուղի մեջ։ Մի երկու ժամում կարելի է զամբյուղը լցնել։

ԱՐԱՅԻԿ — Իսկ էդ տունկը խանութներում չե՞ն ծախում։

ԳԱՌՆԻԿ — Խանութներում համարյա չէ, իսկ էնպես, տղաները մեկ-մեկ իրենց հավաքածը բերում են ծախում։

ԱՐԱՅԻԿ — Դե՛, թե ծախում են, էլ ինչի՞ գնանք չարչարվենք, մայրիկին կասեմ թող առնի։

ԳԱՌՆԻԿ — Անխելք, բանի որ մենք կարող ենք հավաքել, մայրիկդ ինչի՞ իզուր փող ծախսի։

ԱՐԱՅԻԿ — Իսկ քո կարծիքով փո՞ղն է թանկ, թե՞ մեր առողջությունը։

ԳԱՌՆԻԿ — Իսկ էդ փողն ինչպե՞ս է հայրդ ձեռք բերում, գիտե՞ս...

ԱՐԱՅԻԿ — Իհարկե, գիտեմ, ինչ-որ թուղթ է ստորագրում, փողն առնում է գալիս...

ԳԱՌՆԻԿ — (ծաղրական ընդօրինակելով) Փողն առնում է գալիս... Փողը չարչարանքի համար են տալիս, էնպես չեն բաժանում, խնձոր չի, որ բերանդ բացես, պառկես ծառի տակ ու սպասես, որ ինքն իրեն ընկնի։

ԱՐԱՅԻԿ — Դե, դե կարգին խոսիր, ասացի՞ ուրիշ մարդ եմ գրել։

ԳԱՌՆԻԿ — Ուրեմն գալի՞ս ես գնանք տունկի։

ԱՐԱՅԻԿ — Չէ, ոչ մի տեղ էլ չեմ գալիս, ինձ տունկ հարկավոր չէ։

ԳԱՌՆԻԿ — Ճի՞շտ... ասա՝ ազնիվ պիոներական խոսք։



ԱՐԱՅԻԿ— Խուրի-մուրի կարիք չկա, ասացի՝ չէ, ուրեմն՝ չէ, չեմ գալիս ու վերջ...

ԳԱՌՆԻԿ— Վա՜յ, ինչ լավ է, շնորհակալ եմ, շատ շնորհակալ եմ, դու ինձ փրկեցիր:

ԱՐԱՅԻԿ— (կասկածամիտ նրան նայելով) Ինչի՞ց...

ԳԱՌՆԻԿ— Հասկանու՞մ ես, մայրիկս այսօր որոշել է լվացք անել, իսկ նա քո մայրիկի նման սովոր չէ ջուր բերելու, ստիպված պիտի լինեի մնալ ջուր կրել աղբյուրից. հիմա քանի որ դու մնում ես....

ԱՐԱՅԻԿ— Քո տեղը ջուր կրեմ հա՞...

ԳԱՌՆԻԿ— Շատ չէ՜, մի տաս-տասնհինգ դույլ բերես, հերիք է, մի՛ վախենա, ուտելու ժամանակը որ գա, մայրիկս չի խանգարի, կսպասի մինչև ուտես վերջացնես... հիմա ես մայրիկիս կասեմ... (տան կողմը) Մա՜...

ԱՐԱՅԻԿ— Սպասիր... Իսկ այդ անտառը շա՞տ է հեռու:

ԳԱՌՆԻԿ— Շա՜տ...

ԱՐԱՅԻԿ— Փչում ես:

ԳԱՌՆԻԿ— Վա՜յ, չես հավատում՝ նայի՛ր. տեսնու՞մ ես փողոցի ծայրից որ սկսվում է, սունկն էլ անտառումն է:

ԱՐԱՅԻԿ— Դա բոլորովին էլ հեռու չէ:

ԳԱՌՆԻԿ— Ինչպես թե հեռու չէ. մինչև փողոցի ծայրը պիտի հասնել, որտեղ անտառ մտնես, հետո անտառում էլ հարկավոր կլինի մի էդքան գնալ: Գործ չունես, ազնիվ խոսք, պառկի հանգիստ ոտանավոր գրի, մինչև մայրիկս լվացք անելը կսկսի... (տան կողմը) Մա՜...

ԱՐԱՅԻԿ— (վեր թռչելով) Սպասիր. ասացի. կարող ես ինքդ մնալ ջուր կրել. ես գնում եմ անտառ սունկ հավաքելու:

ԳԱՌՆԻԿ— Լսի՛ր, մարդ պիտի իր խոսքի տերը լինի, ասացիր, որ...

ԱՐԱՅԻԿ— (ընդհատելով) Ասացի՝ գնում եմ, գնում եմ. վե՛րջ, ասածս ասած է:

ԱՆԱՀԻՏ— (տնից դուրս գալով) Ի՞նչ է պատահել:

ԳԱՌՆԻԿ— Սկզբից ասում էր անտառ գալ չի ուզում, հիմա կպել է, թե՝ պիտի գամ:

ԱՆԱՀԻՏ— Դեհ, թող գա:

ԳԱՌՆԻԿ— Ինչպե՞ս թե՜ գա, իսկ լվացքի ջուրն ո՞վ պիտի կրի:

ԱՆԱՀԻՏ— (հասկանալով) Ախ լվացքի ջո՜ւրը... ոչինչ, Գառնիկ ջան, ես ջուրը կբերեմ:

ԳԱՌՆԻԿ— Բայց, մեկ է, նրան մայրիկը չի թողնի անտառ գնա:

ԱՆԱՀԻՏ— Կթողնի, ես արդեն խնդրել եմ նրան:

ՇՈՒՇԱՆԻԿ— (գալիս է մի մեծ կապոց ձեռքին) Ահա սա ճանապարհին ուտելու համար... Գառնիկ ջան, տես, հույսս քեզ վրա է, կհետևես, որ ուտի, թե չէ նա, գիտեմ, խելքը կտա սնկին, քաղցած կմնա:

ԳԱՌՆԻԿ— Հանգիստ եղիր, մորաքույր. ինչպես հարկն է կուտենք, քաղցած չենք մնա: (Վերցնում է զամբյուղները, Շուշանիկի բերած կապոցը, դիմում Արայիկին) Իսկ դու թուղթ ու մատիտ վերցրու, որ այնտեղ հանգստանալու ժամանակ ոտանավորդ շարունակես:

ԱՐԱՅԻԿ— Ճիշտ որ, քիչ էր մնացել մոռանայի: (Վերցնում է):

ԳԱՌՆԻԿ— Գնացի՞նք...

ԱՐԱՅԻԿ— Գնացինք... հա սպասիր. ուզում ես կարպետն էլ վերցրու, որ վրան պառկենք:

ԳԱՌՆԻԿ— Կարպետ պետք չէ. անտառում գետնի կանաչը գորգից էլ փափուկ է... (Շուշանիկին) Ցտեսությո՜ւն, մորաքույր, որ ուշանանք, չանհանգստանաս. անտառում օդը շատ կազդուրիչ է, Արայիկն ինչքան երկար լինի անտառում, այնքան ավելի օգտակար կլինի առողջության համար:

ՇՈՒՇԱՆԻԿ— Հա, Գառնիկ ջան, նրան թարմ օդում լինելը չի խանգարի, կազդուրվել է պետք:

ԳԱՌՆԻԿ— Գնա՛նք, Արայիկ... (Երգելով առաջ է ընկնում: Արայիկը հետևում է նրան: Գնում են):





ՇՈՒՇԱՆԻԿ — (նրանց հետևից) *Լա՛վ նայեցեք ձեզ, շատ չհոգնեք...* (Մի պահ մայրերը լուռ նայում են տղաների հետևից, հետո դառնում են իրար նայում: Անահիտի դեմքը ժպտուն է ինչպես միշտ, Շուշանիկինը՝ մտահոգ: Լռությունը խախտում է վերջինը) *Գնացին... Տես, մոռացա Գայանիկին զգուշացնել, որ չթողնի նրան ծառ բարձրանալ։*

ԱՆԱՀԻՏ — *Ոչինչ, ես զգուշացրել եմ։*

ՇՈՒՇԱՆԻԿ — *Հիմա մինչև վերադառնան՝ հոգիս դուրս կգա... հանկարծ չուշանա՞ն ու մութը վրա հասնի։*

ԱՆԱՀԻՏ — *Մի՛ վախենա, ամեն ինչ կլինի այնպես, ինչպես հարկավոր է... Ա՛յ, կտեսնես, տղադ այնքան փոխված ու կազդուրված կվերադառնա, որ ինքդ էլ կզարմանաս...*

ՇՈՒՇԱՆԻԿ — *Ուր էր, թե այդպես լիներ...*

ԱՆԱՀԻՏ — *Կլինի... Գնանք, գնանք ներս, մի բան էլ մենք ուտենք։*

ՇՈՒՇԱՆԻԿ — (հոգոցով) *Գնանք...* (Գնում են):

Մթություն: Երաժշտություն: Լուսավորվում է: Փոքրիկ մի բացատ անտառում: Արայիկը ձեռքերը գլխի տակ, պառկած գետնին, նայում է վեր՝ ծառերի միջից երևացող երկինքին:

Գայանիկը քիչ հեռու սունկ է հավաքում:

Մի պահ երկուսն էլ լուռ են, ծիտիկների բազմաձայն համերգն է լսվում միայն:

ԱՐԱՅԻԿ — (ալարկոտ, առանց դիրքը փոխելու) *Լսի՛ր, Գայանիկ, էս ծիտիկները չե՞ն հոգնում։*

ԳԱՅԱՆԻԿ — *Ինչո՞ւ պիտի հոգնեն։*

ԱՐԱՅԻԿ — *Ամբողջ օրը ծլվլում են։*

ԳԱՅԱՆԻԿ — *Նրանց գործն էլ դա է...* (Ուղղվում է տեղում, արդեն լի զամբյուղը ձեռքին՝ մոտենում Արայիկին) *Ելնելու միտք չունե՞ս։*

ԱՐԱՅԻԿ — *Մի՛ խանգարի, մտածում եմ։*

ԳԱՅԱՆԻԿ — *Մտածելու համա՞ր եկար անտառ։*

ԱՐԱՅԻԿ — *Բա ինչի՞ համար։*

ԳԱՅԱՆԻԿ — *Սունկ հավաքելու։*

ԱՐԱՅԻԿ — *Հավաքի՛ր, թե քեզ պետք է։*

ԳԱՅԱՆԻԿ — *Իմ զամբյուղն արդեն լցվել է։*

ԱՐԱՅԻԿ — *Վերցրու իմը։*

ԳԱՅԱՆԻԿ — *Քո տե՞ղն էլ ես հավաքեմ։*

ԱՐԱՅԻԿ — *Իսկ ի՞նչ կլինի, ձեռքերդ կկտրվե՞ն։*

ԳԱՅԱՆԻԿ — *Ուրեմն դու պառկես, իսկ ես քո փոխարեն աշխատե՞մ։*

ԱՐԱՅԻԿ — *Ի՞նչ մի մեծ բան է, ընկերներ չե՞նք...*

ԳԱՅԱՆԻԿ — *Ընկերներ ենք։*

ԱՐԱՅԻԿ — *Ուրեմն պիտի ինձ օգնես։*

ԳԱՅԱՆԻԿ — *Ձեռքեր էլ ունես, ոտքեր էլ, ինչո՞ւ պիտի ընկերդ անի քո գործը...*

Նապաստակը դուրս է թռչում թփերի միջից, բարձրանում կոճղի վրա, թեք նայում նրանց:

ԱՐԱՅԻԿ — (նկատում է, նստում տեղում): *Գայանիկ, նայիր, նապաստակ...*

ԳԱՅԱՆԻԿ — *Վա՜յ, իսկապես նապաստակ է... Չբռնե՞նք...*

ԱՐԱՅԻԿ — *Որսորդական շուն լիներ...*

ԳԱՅԱՆԻԿ — *Առանց շան էլ կբռնենք, տե՛ս, կանգնել է, չի փախչում...*

ՆԱՊԱՍՏԱԿ — *Ի՞նչ եք շշմած ինձ նայում, փո-փորձեք բ-բռնել, տեսնում եք, որ չ-չեմ փախչում։*

ԳԱՅԱՆԻԿ — *Արայիկ, դե շարժվիր...*

ԱՐԱՅԻԿ — *Հը՞...*

ԳԱՅԱՆԻԿ — *Աջ կողմից մոտեցիր։*

ԱՐԱՅԻԿ — *Մտածե՞մ...*

ԳԱՅԱՆԻԿ — *Շարժվի՛ր, շարժվի՛ր, մտածելու ժամանակ չէ...* (Զգուշորեն, որ չփախցնի, մոտենում է նապաստակին, Արայիկը նույնն անում է մյուս կողմից):

ՆԱՊԱՍՏԱԿ — (ցատկում է, տեղը փոխում) *Չ-չեք բ-բռնի... Չ-չեք բ-բռնի...* (Շարունակ տեղը փոխելով՝ կամենում է տանել նրանց իր հետևից: Արայիկն անսպասելի դադարում է հետապնդել, նստում է կոճղին):

ԳԱՅԱՆԻԿ — *Ինչի՞ նստեցիր, գնանք...*

ԱՐԱՅԻԿ — *Է՜հ, լա՜վ... մի նապաստակի համար չարժե էսքան վազել։*

ԳԱՅԱՆԻԿ — *Ինչո՞ւ չարժե, կբռնեինք կտանեինք տուն, կպահեինք...*

ԱՐԱՅԻԿ — *Բռնի տար պահի, թե ուզում ես, ինձ պետք չէ...*

ՆԱՊԱՍՏԱԿ — (պտտվելով նրանց շուրջը) *Չ-չեք բ-բռնի, չ-չեք բ-բռնի...*

ԳԱՅԱՆԻԿ — *Գնա գործիդ, նապաստա՛կ, իմ ընկերը հետևիցդ գալու միտք չունի...*

ՆԱՊԱՍՏԱԿ — Ինչ ես ա՛յ չ-չարի, մի ուրիշ-շն է անելու, ամբ-բան մարդը, միևնույն է, շարժվելու է, վ-վազելու (անհետանում է թփերի մեջ):

ԱՐԱՅԻԿ — Ի՞նչ էր դուրս տալիս:

ԳԱՌՆԻԿ — Վիրավորվեց, որ իրեն արհամարհեցինք...

Դրսից գայլի ոռնոց է լսվում:

ԱՐԱՅԻԿ — Սա ի՞նչ է...

ԳԱՌՆԻԿ — Սպասի՛ր, սպասի՛ր... գայլի ձայն է, գայլն է ոռնում, շուտ արա տուն փախչենք:

ԱՐԱՅԻԿ — (տագնապահար) Ճի՞շտ ես ասում, թե՞ խաբում ես, ճի՛շտն ասա...

ԳԱՅԼ — (հայտնվելով ծառերի արանքից) Հա՛ու..., քաղցա՛ծ եմ, մա՞րդ եմ ուզում ուտե՞մ...

ԳԱՌՆԻԿ — Արայիկ, այս կո՛ղմը, շո՛ւտ...

ԱՐԱՅԻԿ — Մա-մա՜...

Երեխաները, ամեն ինչ թողած, փախչում են:

ԳԱՅԼ — Հաու՜... հանեք, թմփիկ երեխաներ, միևնույն է, չեք ազատվի իմ ձեռքի՜ց... (Պոկվում է տեղից, ընկնում նրանց հետևից: Տագնապի երաժշտություն: Մթություն):

Վ ա ր ա գ ո ւ յ ր

## ԳՈՐԾՈՂՈՒԹՅՈՒՆ ԵՐԿՐՈՐԴ

Նախորդ գործողությունն ավարտող տագնապի երաժշտության տակ լուսավորվում է մի այլ վայր անտառի խորքում: Սարսափահար վազելով գալիս է Արայիկը, նրա հետևից՝ Գառնիկը:

ԳԱՌՆԻԿ — (հևալով կանչում է) Արայի՜կ, սպասի՛ր, սպասի՛ր, ասում եմ, ե՜ս եմ, Գառնի՜կը... (Արայիկը բերանքսիվայր ընկնում է գետին, բարձրաձայն հեկեկում: Գառնիկը հևալով գալիս նստում է նրա կողքին): Լա՛վ, էլ մի՛ լա, ազատվեցինք, թողեց ու գնաց, աչքով տեսա: Դե ի՞նչ ես ձենդ գլուխդ գցել, վտանգն անցել է, նո՞ր ես լալիս...

ԱՐԱՅԻԿ — (փոքր-ինչ հանգստացած) Իսկ թե հանկարծ հասներ բռներ, ի՞նչ կանեինք...

ԳԱՌՆԻԿ — Ի՞նչ պիտի անեինք, կուտեր ու վերջ:

ԱՐԱՅԻԿ — (լացն ուժեղացնելով) Ա՛յ, տեսնում ե՞ս...

ԳԱՌՆԻԿ — Դե լավ, լավ, արի մտածենք, ինչ պիտի անենք:

ԱՐԱՅԻԿ — Տուն պիտի գնանք, ի՞նչ պիտի անենք:

ԳԱՌՆԻԿ — Իսկ ճանապարհը դու գիտե՞ս:



ԱՐԱՅԻԿ — (միանգամից լացը կտրած) Ճանապա՞րհը... ինչպե՞ս թե ճանապարհը... Իսկ դու, ինչ է, չգիտե՞ս...

ԳԱՌՆԻԿ — Էս անտառում ես առաջին անգամն եմ:

ԱՐԱՅԻԿ — Ինչպե՞ս թե առաջին անգամն ես, հապա ինչո՞ւ այս կողմը վազեցինք...

ԳԱՌՆԻԿ — Իսկ ո՞ւր վազեինք, գայլի կո՞ղմը... հետո, դու ինձանից առաջ էիր ընկել, ես մենակ չէի թողնելու:

ԱՐԱՅԻԿ — (հուսահատ) Ի՞նչ պիտի անենք...

ԳԱՌՆԻԿ — Մի բան կանենք, մի՛ վախենա, չենք կորչի... Ուրեմն մենք եկանք էս կողմից... Նշանակում է մեր գյուղն էս կողմում է... Դու չե՞ս հիշում՝ մենք ուղիղ էինք վազում, թե...

ԱՐԱՅԻԿ — Ես ոչինչ չեմ հիշում, իմ գործը չի, ինձ տո՛ւն տար:

ԳԱՌՆԻԿ — Քո կարծիքով ես տուն գնալ չեմ ուզում:

ԱՐԱՅԻԿ — Շուտով կմթնի, հասկանում ես, կմթնի՜...

ԳԱՌՆԻԿ — Հասկանում եմ, մի՛ գոռա, սպասիր բարձրանամ ծառը՝ չորս կողմ նայեմ, տեսնեմ ուր ենք հասել... (Բարձրանում է ծառը, շուրջը նայում):

ԱՐԱՅԻԿ — (ծառի տակից դեպի վեր) Բան տեսնո՞ւմ ես, թե...

ԳԱՌՆԻԿ — Տեսնում եմ:

ԱՐԱՅԻԿ — Գյուղը երևում է, գյուղը...

ԳԱՌՆԻԿ — Ամեն ինչ պարզ է:

ԱՐԱՅԻԿ — Ի՞նչն է պարզ:

ԳԱՌՆԻԿ — Հիմա իջնեմ կիմանաս: (Սկսում է իջնել: Կես ճանապարհին ձեռքերը ճյուղից պոկվում են և թրմփալով ընկնում է գետին): Վա՜յ, վա՜յ ոտքս... ոտքս, կմեռնեմ, ես կմեռնեմ... Վա՜յ, վա՜յ:

ԱՐԱՅԻԿ — Ի՞նչ պատահեց, սպասիր, մի՛ գոռա...

ԳԱՌՆԻԿ — Կոտրվեց... ոտքս կոտրվեց: Վա՜յ, վա՜յ... ձեռք մի՛ տա, ձեռք մի՛ տա, վա՜յ...

ԱՐԱՅԻԿ— Ա՛յ քեզ կրա՜կ, ի՞նչ պիտի անենք...
ԳԱՌՆԻԿ — (տնքալով) Գյուղից շատ ենք հեռացել... վա՜յ... մինչև մթնելը ճանապարհի մի բաժինն էլ չենք կարողանա անցնել... վա՜յ, վա՜յ...
ԱՐԱՅԻԿ — Ինչպես թե «չենք կարողանա». ես մենա՞կ պիտի գնամ:
ԳԱՌՆԻԿ — Ես... ես տեղից շարժվել չեմ կարող... վա՜յ... դու պիտի գնաս օգնության կանչես... վա՜յ...
ԱՐԱՅԻԿ— Ճանապարհը չգիտեմ, հասկանո՞ւմ ես:
ԳԱՌՆԻԿ — Այսպես ուղիղ պիտի գնաս... մինչև վաղը առավոտ գյուղ կհասնես:
ԱՐԱՅԻԿ— Ես ոչ մի տեղ էլ չեմ գնա. գայլի կերակուր դառնալու միտք չունեմ...
կուտեն, ոտս կհասցնեն... վա՜յ... վա՜յ, ոտքս...
ԱՐԱՅԻԿ— Ոտքս կոտրվեր՝ տնից դուրս չգայի... (Մի պահ երկուսն էլ լուռ են, միայն Գառնիկի տնքոցն է լսվում: Լռությունը խախտում է Արայիկը): Մթնում է... Լսի՛ր, դու քանի՞ կիլո ես:
ԳԱՌՆԻԿ — Չեմ քաշվել... երևի մի քառասուն...
ԱՐԱՅԻԿ — Վա՜յ... քառասո՞ւն... Ես երեք կիլոյից ավել բան չեմ բարձրացրել իմ կյանքում:
ԳԱՌՆԻԿ — Բարձրացնելն ուրիշ է, շալակելն ուրիշ: Շալակելն ավելի հեշտ է:
Գայլի հեռավոր ոռնոց է լսվում:
ԱՐԱՅԻԿ — Գայլը... Չլինի՞ այս կողմն է գալիս:
ԳԱՌՆԻԿ — Երևի մեզ է փնտրում... Վա՜յ... դու



ԳԱՌՆԻԿ— Որ այդպես է, փայտ հավաքիր, կրակ վառիր, կմնանք այստեղ... Վա՜յ... մինչև մթնելը կսպասեն, կտեսնեն, որ չկանք, կսկսեն փնտրել, կարող է գան գտնեն:
ԱՐԱՅԻԿ — Դու խելքդ թռցրե՞լ ես...
ԳԱՌՆԻԿ— Չգիտեմ, ուրիշ ճար չկա. ուզում ես, ինձ թող, գնա քո գլխի ճարը տես... վայ, վա՜յ...
ԱՐԱՅԻԿ — (իր գլուխը խփելով) Հիմա՞ր... ի՞նչ գործ ունեի անտառում...
ԳԱՌՆԻԿ — Սպասի՛ր, իմ ցավն ինձ հերիք է... Վա՜յ, վա՜յ, ոտքս... Լսի՛ր, կարո՞ղ ես ինձ շալակել...
ԱՐԱՅԻԿ — Շալակե՞լ... ամբողջ օրը վազել եմ, հիմա էլ քեզ շալակե՞մ... Մեկը պետք է, որ ինձ շալակի...
ԳԱՌՆԻԿ — Դա ճիշտ է... վա՜յ... Չէ, բան չի դուրս գա, էդպես էլ չի ստացվի...
ԱՐԱՅԻԿ— Իսկ ի՞նչ էիր մտածել որ...
ԳԱՌՆԻԿ— Ծառից տեսա, անտառապահի տնակն այստեղ մոտիկ է, թե կարողանայիր ինձ շալակել... Վա՜յ... Ես ճանապարհը ցույց կտայի... Մինչև մթնելը կարող էինք հասնել այնտեղ... Իսկ այնտեղից... վա՜յ... իսկ այնտեղից անտառապահ պապիկը մեզ
փախիր... գնա այս կողմը, սկզբում ուղիղ, հետո աջ, հետո նորից աջ, հետո ձախ ու նորից աջ, միայն զգույշ՝ ճահիճը չընկնես... Վա՜յ... Մի ամիս առաջ մեր գոմեշը խրվեց, միայն պոզերն էին երևում... Վա՜յ... Գնա՛, գնա՛, իմ պատճառով դու էլ գայլի բաժին չդառնաս:
ԱՐԱՅԻԿ — Ես ոչ մի տեղ չեմ գնա: (Գայլի ոռնոցն ավելի մոտիկից է լսվում: Արայիկը սարսափած այն կողմն է նայում): Գալիս է... Լսի՛ր, արի փորձենք, գուցե կարողանամ...
ԳԱՌՆԻԿ — Չէ՛, դժվար կլինի...
ԱՐԱՅԻԿ — Ի՞նչ անենք՝ դժվար կլինի, արի՛, էլ ժամանակ մի՛ կորցնի... (օգնում է բարձրանալ):
ԳԱՌՆԻԿ — Կամաց, կամաց... վա՜յ, վա՜յ... կըմեռնեմ...
ԱՐԱՅԻԿ — (շալակելով նրան) Փի՛չ, անտանելի... աղջիկ չես, մի քիչ դիմացիր ցավին... (Տնքալով ծանրության տակ) Ո՞ր կողմը պիտի գնամ...
ԳԱՌՆԻԿ — Առայժմ՝ ուղիղ, հետո ես կասեմ:
ԱՐԱՅԻԿ — (տանելով նրան) Ջուր բերելով էիր պարծենում... ջուրն ինչ է՝ մի քանի կիլո, քեզ նման հարյուր կիլոգրամ չէ...

Գնում են: Արդեն բոլորովին մոտիկից կըր-կրկնվում է գայլի ոռնոցը: Մթություն: Երա-ժըշտություն: Լուսավորվում է անտառապատի անկյունը, փոքրիկ բացատում:

Արևը վաղուց մայր է մտել, անտառում հա-մարյա մթնել:

Տնքալով ու քրտինքը սրբելով, գալիս է Ա-րայիկը՝ Գառնիկին շալակած:

ԱՐԱՅԻԿ — (ռաքերը ճակատից թափ տալով՝ հա-նում է անակին, կանգնում) *Իջի՛ր, հասանք:*

ԳԱՌՆԻԿ — *Ես միանգամից ներս մտնենք...*

ԱՐԱՅԻԿ — *Իջի՛ր, ասում եմ...*

ԳԱՌՆԻԿ — *Լավ, լավ, մի՛ գոռա...* (Իջնելով) *Կամաց, կամաց, վա՜յ...*

ԱՐԱՅԻԿ — (բեռից ազատվելով) *Ո՜ֆ, մեջքս ջարդվեց:*

ԳԱՌՆԻԿ — *Ինչ կար թե ջարդված լինի... Ջարդ-ված մեջքով մարդը ոտքի վրա կանգնած մնալ չի կարող... Վա՜յ, ոտքս...*

ԱՐԱՅԻԿ — *Փղի ծանրություն ունես:*

ԳԱՌՆԻԿ — *Հա, մի քիչ ծանր եմ... Բայց դու կեցցե՛ս, այսքան տեղը բերեցիր, ոչ էլ չը-բաշեցիր:*

ԱՐԱՅԻԿ — (խռովկան) *Հա՜, չբաշեցի՞... Կարծես ձի լինեմ, ապակյա՞ նստել մեջքիս, հրա-մաններ ես տալիս՝ աջ գնա, ձախ գնա...*

ԳԱՌՆԻԿ — *Ես մեղավո՞ր եմ, որ ճանապարհը չգիտես:*

ԱՐԱՅԻԿ — (համարյա գոռալով) *Քեզ ո՞վ էր ասում ոտքդ կոտրեիր...*

ԳԱՌՆԻԿ — *Դե լա՜վ, արդեն հասել ենք: Տես ներսը մարդ կա՞:*

ԱՐԱՅԻԿ — (մոտենում է, պատուհանից ներս նայում) *Մութ է, ոչինչ չի երևում:*

ԳԱՌՆԻԿ — *Պատուհանը ծեծի՛ր, «պապի՜կ» կանչիր:*

ԱՐԱՅԻԿ — (ապակուն թխթխկացնելով) *Պա-պի՜կ, պա՜յ պապիկ...* (Գառնիկին) *Մարդ չկա, ի՞նչ անենք...*

ԳԱՌՆԻԿ — *Օգնիր ինձ ներս գնանք:* (Մտնում են ներս):

ԱՐԱՅԻԿ — (արդեն ներսում, մթության մեջ) *Լույսն ինչպե՞ս վառենք:*

ԳԱՌՆԻԿ — *Շատ հասարակ. վերցրու լուցկին, լամպի ապակին հանիր, պատրույգը կվառես ու ապակին նորից տեղը կդնես:*

ԱՐԱՅԻԿ — *Դու մի՛ ասա, լամպն ու լուցկին որտեղի՞ց գտնեմ:*

ԳԱՌՆԻԿ — *Տես սեղանի վրա չե՞ն:*

Արայիկը շոշափելով գտնում է լուցկին, լամպը վառում: Տնակի ներսը լուսավորվում է: Գառնիկը նստած է դռան մոտ՝ աթոռին, երկու ձեռքով ոտքը բռնած:



ԱՐԱՅԻԿ — (շուրջը նայելով) *Անտառապահը մենա՞կ է ապրում այստեղ:*

ԳԱՌՆԻԿ — *Մենակ:*

ԱՐԱՅԻԿ — *Հապա ո՞ւր է գնացել, ինչու տանը չէ:*

ԳԱՌՆԻԿ — *Անտառում շրջում է երևի:*

ԱՐԱՅԻԿ — (պատուհանին նայելով) *Լսի՛ր, իսկ գազանները ներս չե՞ն մտնի:*

ԳԱՌՆԻԿ — *Չէ, վախենում են անտառապահ պապիկից:*

ԱՐԱՅԻԿ — (նստելով) *Հիմա ի՞նչ պիտի անենք:*

ԳԱՌՆԻԿ — *Պիտի սպասենք պապիկը գա:*

ԱՐԱՅԻԿ — *Կարո՞ղ է հանկարծ այսօր չգա:*

ԳԱՌՆԻԿ — *Կարող է... Արի ինձ տեղավորիր թախտի վրա, ոտքս ցավից շառաչում է:*

ԱՐԱՅԻԿ — *Քո ծառան չեմ, ինքդ գնա, երկու քայլ է:*

ԳԱՌՆԻԿ — *Իսկ ես կարծում էի խելացի ըն-կեր ես...* (Ելնում է, որ գնա, ցավից ճչում է ու նորից նստում):

ԱՐԱՅԻԿ — *Հոգի հանեցիր էլի...* (Մոտենում է, պատրաստվում շալակել) *Արի տանեմ:*

ԳԱՌՆԻԿ — *Հարկավոր չէ, չեմ ուզում:*

ԱՐԱՅԻԿ — (ջղային) *Արի՛, ասում եմ:* (Համարյա ուժով շալակում է, տանում դնում թախ-տին):

ԳԱՌՆԻԿ — *Կամաց, կամաց, վա՜յ...* (Պառկելով) *Ա՜յ, հիմա լավ է, մենակ կոշիկներս չեմ կարողանում հանել, որ ոտքերս հանգիստ տարածեմ:* (Արայիկը զզվանքով նայում է նրան, հետո լուռ սկսում է հանել նրա կոշիկները: Ցավոտ ոտքի կոշիկը հանելիս Գառնիկը գո-ռում է): *Կամա՜ց, անշնո՛րհք...*

ԱՐԱՅԻԿ — *Անշնորհքը դու ես... Կարծես չէիր կարող մի քիչ մարդավարի ընկնել...* (Կոշիկը

նստում է ճյուղին, բալոնից տափակ բարձ փչեցնում, գնում իր նախկին տեղը, որ նստի):

ԳԱՌՆԻԿ — (ոտքերը բարձի վրա տարածելով) *Օ՜ֆ, շո՜ւնչս տեղը եկավ... հիանալի բան է մեջքի վրա պառկելը, մարդ մի տեսակ ուզում է ոտանավոր գրի...* (Արայիկը խեթ նայում է նրան, լռում: Գառնիկը շարունակում է պառկած): *Ա՜խ, երանի, երանի,*

*Առավոտից երեկո*
*Մեջքիս վրա պառկեի...*

ԱՐԱՅԻԿ — (բարձը նրա վրա շպրտելով) *Ա՛ռ քեզ երանի...*

ԳԱՌՆԻԿ — *Ի՞նչ ես կատաղում:*

ԱՐԱՅԻԿ — *Մեկը պետք է, որ քեզ ծաղրի:*

ԳԱՌՆԻԿ — *Ես չեմ ծաղրում:*

ԱՐԱՅԻԿ — (ծամածռանքով) *«Չեմ ծաղրում»:* (Ելնում է, լուռ շրջում, անկյունն ուսումնասիրում: Դռան մոտով անցնելիս՝ փականը զննում է) *Լսի՛ր...* (Գառնիկը չի պատասխանում): *Քեզ հետ եմ:*

ԳԱՌՆԻԿ — (խռովկան) *Ասա՛:*

ԱՐԱՅԻԿ — *Երկա՞ր պիտի սպասենք:*

ԳԱՌՆԻԿ — *Չգիտեմ:*

ԱՐԱՅԻԿ — *Իսկ ապավարի պառկելը գիտե՞ս...* (Հանկարծ գոռալով) *Քաղցա՛ծ եմ, հասկանո՞ւմ ես, քաղցա՛ծ:*

ԳԱՌՆԻԿ — *Խուլ չեմ, մի՛ գոռա: Պահարանում նայի՛ր, կարող է ուտելու բան լինի:*

ԱՐԱՅԻԿ — *Ես ուրիշի պահարանի հետ գործ չունեմ:*

ԳԱՌՆԻԿ — *Պապիկն ուրիշ չէ... բա՛ց արա նայիր, կասեմ՝ ես եմ բացել:* (Արայիկը բացում է պահարանը) *Կա՞, թե՞ չէ:*

ԱՐԱՅԻԿ — *Էն էլ ինչքա՜ն... Մի տարի ուտես՝ չի պրծնի:*

ԳԱՌՆԻԿ — *Իսկ ի՞նչ է էդքան շատ:*

ԱՐԱՅԻԿ — *Ինչ ասես կա:*

ԳԱՌՆԻԿ — *Պահածոներ կա՞ն:*

ԱՐԱՅԻԿ — *Ինչքան ասես:*

ԳԱՌՆԻԿ — *Ինչի՞ պահածոներ են:*

ԱՐԱՅԻԿ — (ստուգելով) *Մսի, ձկան, բանջարեղենի...*

ԳԱՌՆԻԿ — *Դե մի հատ բաց արա ուտենք:*

ԱՐԱՅԻԿ — *Ես չգիտեմ ինչպես են բացում:*

ԳԱՌՆԻԿ — *Կսովորեցնեմ, բե՛ր:*

ԱՐԱՅԻԿ — *Չէ, գլուխ չունեմ. հաց ու պանիր կուտենք ու վերջ:* (Հանում է պահարանից դնում սեղանին ու հանկարծ մտախոհ դառնում) *Հիմա մայրիկը կարծում է, թե գազանները կերել են ինձ... Շատ լացկան մայրիկ ունեմ, գիտե՞ս...*

ԳԱՌՆԻԿ — *Բոլոր մայրիկներն էլ լացկան են:*



ԱՐԱՅԻԿ — *Ի՞նչ ես կարծում, արդեն մարդ եկած կլինի՞ մեզ փնտրելու:*

ԳԱՌՆԻԿ — *Իհարկե, հիմա երևի ամբողջ գյուղը ոտքի է ելել... Դե բե՛ր, բեր մի բան ուտենք, քունս տանում է արդեն:*

ԱՐԱՅԻԿ — *Ի՞նչ է, էստե՞ղ պիտի քնենք:*

ԳԱՌՆԻԿ — *Բա որտե՞ղ, դրսո՞ւմ...*

ԱՐԱՅԻԿ — *Իսկ անտառապահը չի՞ գալու:*

ԳԱՌՆԻԿ — *Դե մինչև հիմա որ չկա, էլ միտք*

*չո՛նի ազատել. նիմա, ով գիտի, անտառի որ ծայրումն է…*

Պատուհանի հետեւում գայլն է ոռնում:

ԱՐԱՅԻԿ — (*սարսափահար*) *Գայլն է. գալու մեր տեղը…*

ԳԱՌՆԻԿ — *Լույսը հանգցրո՛ւ. թող չտեսնի մեզ այստեղ:*

Արայիկը լույսը հանգցնում է: Տնակի ներսը մթնում է: Հիմա երեւում է դուրսը: Անտառում գիշեր է: Արջը, գայլը և աղվեսը գալիս են, հետևի բարերին կանգնում, տնակի պատուհանից ներս նայում:

ԳԱՅԼ — *Հաու՜… ինձ բան է պետք ուտելու…*

ԱՂՎԵՍ — *Աղմուկ չհանեմ, թե խաբեմ. գառան մսից համեղ կլինի նրանց նստած քաղաքացի այն տղան:*

ԱՐՋ — *Խելոք մնա, ա՛յ աղվես:*

ԳԱՅԼ — *Հաու՜, չեմ համբերու՜մ, սիրտս ինչու՜ է խառնվու՜մ…*

ԱՂՎԵՍ — *Շատ ճիշտ ասիր, եղբայր գայլ… Հավի ֆիրման արթո՛ւն հսկող անպիտան շան հոգին հանել խոստացիր, ես այս պոչս ներքից խոթեմ, պատուհանը ներսից բացեմ քեզ համար…*

ԱՐՋ — *Ամոթ է, ամո՛թ, մեր պահապան պապիկն էսօր ի՞նչ է խնդրել մեզանից:*

ԱՂՎԵՍ — *Մենք կարող ենք խաբել ասել՝ մթության մեջ լավ չենք տեսել, սխալվել ենք ու կերել:*

ԱՐՋ — *Զայրույթ կտրիր, ախպարակ, գլխիդ թաթով կխփեմ, տեղնիդ պես կտապակես, բայց մեկ գետնի վրա կփռվես…*

ԳԱՅԼ — *Հաու՜, մի՛ խառնվի աղի ղուռ՜…*

ԱՂՎԵՍ — *Ասածներդ վիզդ խփիր, գա՛յլ ախպեր:*

ԱՐՋ — *Թե բանն էդպես հասավ, թաթիս համը ճաշակեք: Էս մեկը քե՛զ, խառնակիչ…* (Խըփում է աղվեսին):

ԱՂՎԵՍ — (աղիողորմ) *Վա՜յ, վա՜յ, վա՜յ, անտաշ կոպիտ մթմթան, գանգս տեղից հանեցիր* (դեպի իրեն շարժվող արջից խուսափելով): *Այդ էր պակաս, արջն աղվեսին հանի բո՛նի… Մնաս բարով, գանգապաշարած անտառն* (փախչում է անհետանում ծառերի հետեւում):

ԱՐՋ — (շարժվելով դեպի գայլը) *Գնա՜ս ես քո գործին…*

ԳԱՅԼ — (եռ-եռ գնալով) *Հաու՜… ի՞նչ ես ուզու՜մ, կատաղու՜մ ես, չե՞ս տեսնու՜մ…*

ԱՐՋ — *Կատաղեցիր լավ գիտեմ. բանի գես չեմ կատաղել, պոչդ ցույց տուր մի տեսնեմ:*

ԳԱՅԼ — *Թո՜ւ…* (Փախչելով) *Հաու՜…*

ԱՐՋ — (Մենակ է: Մրթմրթալով կռնից է բերում, ընում տնակի դռան մոտ, հենվում է, պառկում քնելու): *Ես թող փոքրն ու չար մարդ էս կողմերում երևան…* (Հորանջելով) *Հիմա՜… մեղր լինեք ուտի…* (երազկոտ) *երազ նիմա տեսնեի… անհանան փեթակ, մեջը լիքը ծաղկի համով, քաղցր մեղր անպատ…* (Նորից հորանջում է ու քնում) *Խո՜ո, փրռ՜… խո՜ո, փրռ՜…*

ԲՈՒ — (հայտնվում է ծառերից մեկի փչակում, կրակ աչքերը փայլեցնում) *Հու, բու՜, հու, բու՜… աշխարհն արդեն բուն մնաց, անտառն իմն է, ես եմ տերը անտառի…*

Երաժշտություն: Լուսավորվում է տնակի ներսը: Լուսաբաց է: Տղաները քնած են՝ Գառնիկը բախտին, Արայիկը սեղանին, պապիկի տաք մուշտակի մեջ փաթաթված: Դըրսից լսվում է արթնացող անտառի սիմֆոնիան:

ԳԱՌՆԻԿ — (արթնանում է, վեր թռչում, առավոտյան մարմնամարզության շարժումներ անում, բայց նկատելով Արայիկին՝ ամեն ինչ հիշում է ու ոտքը ընկնելով նստում) *Վա՜յ… ոտքս… ես մեռա՜:*

ԱՐԱՅԻԿ — (վախեցած տեղում նստելով) *Ի՞նչ է, ի՞նչ է պատահել…*

ԳԱՌՆԻԿ — (նորից ընկել է բախտին) *Ուզում էի մարզանք անել, մոռացել էի, որ ոտքս… Վա՜յ…*

ԱՐԱՅԻԿ — (հորանջելով) *Ի՜ն… Զարմանալի տղա ես, չես թողնում մարդ գոնե քնի:* (Փաթաթվում է մուշտակում, նախկին դիրքը ընդունում, պատրաստվում քունը շարունակել):

ԳԱՌՆԻԿ — (ոտքը բռնած գոռում է) *Վա՜յ…* (Տեսնելով, որ ուշադրություն չգրավեց, ավելի բարձր) *Վա՜յ…*

ԱՐԱՅԻԿ — (նորից տեղում նստելով, ջղային) *Լսի՛ր, թողնելո՞ւ ես քնեմ, թե՞ չէ:*

ԳԱՌՆԻԿ — *Ցավում է, հասկանո՞ւմ ես… Կարծես ոտքիս մեջ ասեղներ լինեն:*

ԱՐԱՅԻԿ — *Տեղդ հանգիստ վեր ընկիր, ոչ մի ասեղ էլ չի լինի:*

ԳԱՌՆԻԿ — *Քեզ համար հեշտ է ասել…*

ԱՐԱՅԻԿ — *Մեջքիս նստած՝ ճանապարհն ես եկել, երեկվանից մարդ մարդից չես խաբել, ու դեռ ի՞նչ համար է հեշտ:*

ԳԱՌՆԻԿ — *Իսկ պառկած մնալ կարծում ես հեշտ է, հա՞. մեջքիս ոսկորները փշրացան:*

ԱՐԱՅԻԿ — (ծիծաղում է, հետո միանգամից լրջանում) *Ամոթ է, ամոթ, Լեռնցի մարդը*



*տա, որ չիմանա. պառկելուց ոտքերը չեն փտանում:*

ԴԱՌՆԻԿ — *Էհ, միևնույն է, մենք իրար չենք հասկանա. գնա ջրհորից ջուր քաշի բեր լըվացվեմ, հետո վառարանը վառիր, մի քիչ կարտոֆիլ մաքրիր, ջրի հետ լցրու կաթսայի մեջ, դիր կրակին ու, որ կեփվի, մսի պահածոներից մեկը բաց արա, լցրու վրան...*

ԱՐԱՅԻԿ — (շարունակում է ծաղրականը) *Հետո բերեմ հրամցնեմ, որ ուտես, ուտելուց հետո ձեռքերդ ու ոտքերդ լվանամ, սրբեմ... Հետո սկսեմ...*

ԴԱՌՆԻԿ — *Սպասի՛ր, սպասի՛ր, լավ միտք արվեցիր... ոտքերս լվանալ պետք չի, բայց որ նախաճաշենք պրծնենք, կարելի է շատ զգուշությամբ ցավող ոտքս տրորել, ես լսել եմ, դա ցավերը հանգստացնում է...*

ԱՐԱՅԻԿ — *Լսի՛ր, ինձ անխելքի տեղ ես դրել, հա՞...*

ԴԱՌՆԻԿ — *Ինչո՞ւ...*

ԱՐԱՅԻԿ — *Դրա՞կն ընկար, ոտքդ ջարդեցիր... Ես քո ծառան չեմ, հասկացա՞ր:*

ԴԱՌՆԻԿ — *Հասկացա:*

ԱՐԱՅԻԿ — *Ես ոչինչ անել չգիտեմ ու չեմ էլ անի:*

ԴԱՌՆԻԿ — *Ես տեղից շարժվել չեմ կարողանում...*

ԱՐԱՅԻԿ — *Իմ ի՞նչ գործն է, կարողացիր:*

ԴԱՌՆԻԿ — *Էգոիստ, հա՞...*

ԱՐԱՅԻԿ — *Հա, էգոիստ... Զարմացրիր քո աքով...*

ԴԱՌՆԻԿ — *Լավ, հասկացա ինչ տեսակ ընկեր ես:* (Դառնում է մեջքով դեպի նա, լռում: Երկարատև լռություն, որի ընթացքում Արայիկը ջանում է քարի նման անտարբեր ձևանալ... Հետո հանկարծ փղձկում է, բարձրաձայն արտասվում):

ԱՐԱՅԻԿ — (արտասվախառն) *Վատ ընկերը դու ես, հասկանո՞ւմ ես, դո՛ւ... Սիրտդ կոտրում ես, որ ես... որ ես... կարծես մեղավոր եմ, որ ոչինչ անել չեմ կարող... Սովոր չե՞մ...* (Դեմքը ծածկում է ձեռքերով, արտասվում):

ԴԱՌՆԻԿ — (ելնում է տեղից, գալիս առաջ, դիմում հանդիսատեսին) *Ազնիվ պիոներական խոսք, խղճացի նրան. քիչ էր մնում ամեն ինչ կիսատ թողնեի, գաղտնիքը բանայի... Իմ ոտքին ախր ոչինչ չէր պատահել. այս բոլորը մենք պապիկի հետ էինք մտածել, որ Արայիկը գործ անել սովորի... Ես արդեն ուզում էի նրան ասել, բայց հանկարծ դուռը բացվեց ու...* (Թռչում է իր տեղը, նորից պառկում: Բացվող դռան մեջ հայտնվել է հետևի ոտքերին կանգնած արջը):

ԱՐՋ — *Բարի օ՜ր...*

ԱՐԱՅԻԿ — (նկատում նրան, լեղապատառ թաքնըվում է սեղանի տակ, ճչալով) *Մա-մա՜...*

ԴԱՌՆԻԿ — (շտապ) *Մի՛ վախենա, Արայիկ, մեր սիրելի փնթփնթանն է, բարի լույս է մեզ ասում...*

ԱՐՋ — *Փա՜յտ-մա՜յտ չջարդե՞նք...*

ԴԱՌՆԻԿ — *Սպասիր, հետո՛, իմ ընկերը վախենում է քեզանից. պարզիր նրա համար, որ իմանա սիրում ես դու երեխաներին:*

Հնչող երաժշտության տակ արջը պարում է դռան մոտ: Արայիկն ավելի ու ավելի հետաքրքրված, դուրս է գալիս թաքստոցից, կանգնում Դառնիկի մոտ: Քիչ անց նա արդեն ծիծաղում է ու ծափ տալիս պարողին:

ԴԱՌՆԻԿ — (պարն ավարտվելուց հետո) *Շնորհակալ ենք, փնթփնթան:*

Արջը գլուխ է տալիս, գնում իր տեղը կանգնում:

ԱՐԱՅԻԿ— (Գառնիկին, ծիծաղը դեռ դեմքին) *Նա մեզ չի տալի, չէ՞...*

ԳԱՌՆԻԿ— *Ի՞նչ ես ասում. նա գազանների մեջ ամենաբարին է, ու ամենաաշխատասերը... Թե նրան չբարկացնեն՝ չի վնասի ոչ ոքի:*

ԱՐՋ— (օրորվելով անցնում) *Փառա՜յա-մառա՜յա չջառա՜րդե՞նք...*

ԱՐԱՅԻԿ— *Ի՞նչ է ասում:*

ԳԱՌՆԻԿ— *Ասում է օգնել, որ փայտ ջարդենք:* (Արջին) *Չէ, մինթմինթա՛ն, իմ ոտքը կոտրված է, չեմ կարող:*

ԱՐՋ— *Ի՜սկ ընկե՞րդ...*

ԳԱՌՆԻԿ— (նայելով Արայիկին) *Ընկե՞րս... ընկերս սովոր չի:*

ԱՐՋ— *Կսովորի՜...*

ԱՐԱՅԻԿ— *Ի՞նչ է ասում:*

ԳԱՌՆԻԿ— *Փայտ ջարդել է ուզում սովորեցնի քեզ:*

ԱՐԱՅԻԿ— (տատանվելով) *Հը՞...*

ԱՐՋ— (թաթը մեկնում է Արայիկին) *Ծա՜նոթա-նանէր, ախպերանանէր...*

ԳԱՌՆԻԿ— *Մի՛ վախենա, բարեկամանալ է ուզում:*

ԱՐԱՅԻԿ— (երկչոտ հետաքրքրասիրությամբ բռնում է իրեն մեկնված թաթը) *Իմ անունն Արայիկ է, ամառանոց եմ եկել կազդուրվելու:*

ԱՐՋ— *Լա՜վ ես ա՜րել, կկազդուրվե՜ս անպայման:* (Ձեռքից բռնած տանում է դեպի դուռը) *Աա՜րի, աա՜րի...*

Արայիկն անկախ իր կամքից դուրս է գնում արջի հետ:

ԳԱՌՆԻԿ— (մնալով մենակ, աշխույժ ելնում է տեղից. առաջ գալիս, դիմում հանդիսատեսին) *Երեք օր պապիկը չեկավ... Արայիկն այդ երեք օրում բոլորովին փոխվեց: Առաջին օրը մինթմինթան որ նրան դուրս տարավ, պատուհանից նայեցի ու ի՞նչ տեսնեմ...*

Երաժշտության տակ լուսավորվում է դուրսը: Արջն ու Արայիկը զերանը մեջտեղ գցած՝ սղոց են քաշում. նախ դանդաղ, դժվարությամբ, հետո ավելի ու ավելի ուժգին, աշխույժ:

ԳԱՌՆԻԿ— (որ միշտ մնում է իր տեղում, լուսավորված) *Երկրորդ օրը...* (Երաժշտական տակտի տակ դրսի փոխարեն լուսավորվում է անտառի ներսը: Արայիկը, որ քնած էր սեղանին, արթնանում է արևի շողերից, վեր թռչում, անկողնին փոխարինող պապիկի մուշտակը մի կողմ նետում, սկսում սենյակը կարգի բերել, վառարանը վառել, հաց եփելու համար կարտոֆիլ մաքրել):

ԱՐԱՅԻԿ— (դեպի թախտը, որտեղ պառկած է Գառնիկի կրկնակը) *Հե՜յ, Գառնիկ, արթնացի՛ր, ջուր բերեմ լվացվիր, նախաճաշը հիմա պատրաստ կլինի... Չե՞ս լսում, անբա՜ն Գառնիկ, արթնացի՛ր...*

ԳԱՌՆԻԿ— (որ բեմի առաջնամասի մի անկյունում կանգնած՝ նայում էր այդ տեսարանը, դիմում է հանդիսատեսին) *Նա ինձ անբան ասաց. հետաքրքիր է, չէ...*

Արայիկը մսի պահածո է բացում, լցնում վառարանին դրված կաթսայի մեջ, խառնում, ձեռքերն այրելով կաթսան բերում դնում է սեղանի վրա, դառնում թախտին պառկած Գառնիկի կրկնակին:

ԱՐԱՅԻԿ— *Ես համբերել չեմ կարող, սկսեցի ուտել...*

ԳԱՌՆԻԿ— (առաջնամասի իր անկյունից, հանդիսատեսին) *Երրորդ օրը...*

Երաժշտության տակ ներսի փոխարեն լուսավորվում է անտառը դրսից: Արայիկը երգելով տնակից դուրս է գալիս դույլը ձեռքին, ջրհորից ջուր է քաշում տնակի պատուհանի մոտ անեցված ծաղիկները ջրում, հիանում իր աշխատանքով, ապա կացինը վերցնելով փայտ կոտրում:

ՍԿՅՈՒՌ— (հայտնվում է Արայիկի կողքին) *Կեցցե՛ս, տղա, կազդուրվեցիր, ավելի շուտ, քան կարելի էր սպասել...*

ԳԱՌՆԻԿ— (իր տեղից հանդիսատեսին) *Տեսա՞ք, որ ճիշտ փոխվել է նա, որ թե քիչ էլ պառկած մնար, բոլորովին պիտի հիվանդանար. ելա թախտից ու դուրս եկա տնակից...* (Մոտենալով Արայիկին) *Լավ ես մենակ թողել ինձ:*

ԱՐԱՅԻԿ— (զարմացած նրան նայելով) *Իսկ ոտքդ: Չի՞ ցավում:*

ԳԱՌՆԻԿ— *Ո՞տքս... ինչո՞ւ պիտի ոտքս ցավի:*

ԱՐԱՅԻԿ— *Ջարդվել էր, չէ՞:*

ԳԱՌՆԻԿ— *Ոչ մի ջարդվել. ես խաբում էի քեզ:*

ԱՐԱՅԻԿ— *Ի՞՞նչ...* (Վերցնում է փայտի մի կը[..]տոր, ընկնում հետևից: Սկյուռիկը և նրա կողքին հայտնված նապաստակը դիտում են նրանց վազվզուկն ու ծիծաղում: Ի վերջո Արայիկը բռնում է Գառնիկին) *Ինչո՞ւ խաբեցիր, անպե՛տք...*

ԳԱՌՆԻԿ— *Որ աշխատել սովորես, թույլ ու անբան չմնաս...*

Երաժշտություն: Մթություն: Լուսավորվում է մեզ ծանոթ գյուղական տան ծառազարդ բակը: Գառնիկի մայրը լվացք է անում: Արայիկի մայրը՝ Շուշանիկը դուրս է գալիս տնից:

Տրվում է անվճար՝ «Պիոների» երկրորդ համարի հետ

ՇՈՒՇԱՆԻԿ— (դույլը ձեռքին մոտենում է Անահիտին) *Արդեն չորրորդ օրն է...*

ԱՆԱՀԻՏ— *Հազար անգամ ասացի՝ մի՛ անհանգստանա...*

ՇՈՒՇԱՆԻԿ— *Արայիկին ախր դու չգիտես, նա, որ չստիպես, օրերով քաղցած կպառկի... Հիմա, ով գիտի, բոլորովին նիհարել է, մոմի պես հալվել...*

Դրսից լսվում է տղաների երգը: Մայրերն ուրախացած նայում են ձայնի կողմը: Քիչ անց սունկով լի զամբյուղները ձեռքներին, իրար ուս գրկած, բակ են մտնում Արայիկն ու Գառնիկը: Նկատում են մայրերին, զամբյուղները դնում ցած ու նետվում նրանց գիրկը:

ԳԱՌՆԻԿ, ԱՐԱՅԻԿ— (միասին) *Մամա՜...*

ԱՆԱՀԻՏ— (Գառնիկին գրկած) *Նիհարել ես, գունատվել:*

ԳԱՌՆԻԿ— *Պառկած էի շարունակ:*

ՇՈՒՇԱՆԻԿ— (Արայիկին գրկած) *Լավացել ես, կազդուրվել...*

ԱՐԱՅԻԿ— *Աշխատում էի, գործ անում:*

ՇՈՒՇԱՆԻԿ— *Դե, ես գնամ ջուր բերեմ, լվացվիր, որ ճաշենք...*

ԱՐԱՅԻԿ— *Այդ էր պակաս. դույլը տուր ինձ, ջուր ինքս կբերեմ:* (Խլում է դույլը, թռչկոտելով ու երգելով գնում է դուրս):

ՇՈՒՇԱՆԻԿ— *Հրաշք է սա, Անահիտ...*

ՊԱՊԻԿ— (որ մտել է հրացանն ուսին ու տեսել վերջին տեսարանը) *Ոչ մի հրաշք էլ չկա, աշխատել է սովորել... աշխատանքն է մարդուն մարդ դարձնում, կազդուրում:*

ՇՈՒՇԱՆԻԿ— *Շնորհակալ եմ, պահապան պապիկ, դու՛ տղայիս բուժեցիր: Անահիտն ասել է ինձ ամեն բան:*

ՊԱՊԻԿ— *Մենակ ես չէի կարող, օգնականներ ունեի:*

ՇՈՒՇԱՆԻԿ— *Օգնականնե՞ր... Ովքե՞ր էին:*

ՊԱՊԻԿ— *Գլխավորին դու գիտես...*

ՇՈՒՇԱՆԻԿ— (Գառնիկին նայելով) *Դու՛. իհարկե. Գառնիկ ջան:*

ԱՐԱՅԻԿ— (լի դույլը բերելով) *Ջուրը որտե՞ղ դնեմ, ասա, մա...*

ՊԱՊԻԿ— *Երկրորդն ու ոչ պակաս կարևորը ինքը հիվանդն էր, քո տղան: Ուզեց բուժվել ու բուժվեց:*

ՇՈՒՇԱՆԻԿ— (գրկելով Արայիկին) *Բալիկ ջան...*

ՊԱՊԻԿ— *Իմ երրորդ օգնականը...*

ԱՐՋ— (մտնում է օրորվելով) *Բա՜րի օր ձեզ...*
(Շուշանիկը ետ է քաշվում):

ՊԱՊԻԿ— *Իսկ չորրորդը...*

ՆԱՊԱՍՏԱԿ— (ներս վազելով) *Պ-պատ-տիվ ու-նեմ, շա տ վ-վազան լ-լավ լսող նապաստակ:*

ՍԿՅՈՒՌ— *Եվ ես՝ նրա քույրը՝ պոչավոր ու գեղեցիկ...*

ԳԱՅԼ— (ցանկապատի հետևից) *Հաու՜, թե շուն չկա, ես էլ գա՜մ...*

ԱՂՎԵՍ— (գայլից առաջ ընկնելով, վազում է պապիկի մոտ) *Պահապա՛ն պապ, բռնի՛ր նրան, ես չլինեի՝ ուտելու էր թռչնիկներից:* (Տեսնելով երախը բացած իր վրա եկող գայլին, ապահով անկյուն է փախչում):

ՊԱՊԻԿ— (գազաններին) *Սպասեցե՛ք, մի՛ աղմկեք, մարդավարի պահեք ձեզ.. Լավ վերջացավ պատմությունն այս, ուրախացեք մարդկանց հետ:*

Երաժշտություն, պար, ցնծություն: Բարձր մի տեղ հայտնվում է բուն, կրակ աչքերը փայլեցնում:

ԲՈՒ— (մտախոհ, վշտահար) *Հու՜ բու՜: Հու, բու՜, նորից մենակ թողին ինձ:*

Ցնծությունն ուժեղանում, խլացնում է բուի ձայնը:

Վարագույր

Շորորալով, հպարտ-հպարտ՝
Կըրթ-կըրթ-կըրթ-կը՛րթ.
Կտրում անցնում խճուղին հարթ՝
Քըրթ-քըրթ-քըրթ-քը՛րթ։

Վարորդը այդ կարգը տեսավ՝
Ա՜յ-այ-այ-ա՜յ.
Ավտոն ճռաց, հոպ, կանգ առավ՝
Վայ-վայ-վայ-վա՜յ...

Կանգնած տեղը վեր-վեր թռավ՝
Պըտ-պըտ-պըտ-պը՛տ,
Ծուխ արձակեց, ջղայնացավ՝
Փըթ-փըթ-փըթ-փը՛թ...

Վարորդն ապշած, գլուխն հանեց՝
Էյ-էյ-էյ-է՜յ,
Բադիկներին քըշ-քըշ արեց՝
Հեյ-հեյ-հեյ-հե՜յ...

Բադիկները կարգով-շարքով՝
Կըպ-կըպ-կըպ-կը՛պ.
Անցան մտան առուն հերթով՝
Շըփ-շըփ-շըփ-շը՛փ...

Ծիծաղեցին մարդիկ բազմած՝
Քահ-քահ-քահ-քա՛հ...
Ա՜յ թե շարք էր ուղիղ կազմած՝
Պահ-պահ-պահ-պա՛հ։

Ու մեքենան արագ թռավ՝
Տու-տու-տու-տու՜...
Արագ թռավ՝ մի կետ դառավ՝
Ու-ու-ու-ու՜...

Նկ. ԼԵՎԱ ԽԱՆԱՄԻՐՅԱՆԻ



*Այստեղից մկնիկը գնում է դաշտ և ասում.*

*— Դաշտ, տուր ինձ հացահատիկ, հացահատիկը կտանեմ ջրաղացպանին, ջրաղացպանը ինձ թեփ կտա, թեփը կտանեմ խոզուկին, խոզուկն ինձ մազ կտա, մազը կտանեմ կոշկակարին, կոշկակարը կկարկատի իմ խեղճ փորիկը։*

*Դաշտն ասում է.*

*— Դրա համար դու ինձ պետք է ջուր տաս։*

*Մկնիկը վազում է առվակի մոտ.*

*— Առվակ, ինձ ջուր տուր, ջուրը կտամ դաշտին, դաշտն ինձ հացահատիկ կտա, հացահատիկը կտանեմ ջրաղացպանին, ջրաղացպանը ինձ թեփ կտա, թեփը կտանեմ խոզուկին, խոզուկն ինձ մազ կտա, մազը կտանեմ կոշկակարին, կոշկակարը կկարկատի իմ խեղճ փորիկը։*

*Եվ առվակն ասում է.*

*Մկնիկ, վերցրու որքան ուզում ես։*

*Մկնիկը վերցնում է այնքան ջուր, ինչքան կարող էր տանել, ու բերում է դաշտին, դաշտը նրան հացահատիկ է տալիս, հացահատիկը բերում է ջրաղացպանին, ջրաղացպանը նրան թեփ է տալիս, թեփը բերում է խոզուկին, խոզուկը նրան մազ է տալիս, մազը բերում է կոշկակարին, և կոշկակարը կարկատում է մկնիկի փորիկը։*

Գերմաներենից թարգմ. Հ. ՔՅՈՒՓԵԼՅԱՆԸ

ՍԱՐԳԻՍ ԽԱՐԱԶՅԱՆ

# Ձյուն է գալիս



Դաշտն է ծածկում ձյունը բարի,
Լեռ ու քարափ չեն երևում,
Ամպոտ ուսին հեռու սարի
Մի անտառ է մեղմ օրորվում։
Հիանում են հող ու երկինք
Փաթիլների նրբին նազով,
Արթնանում է տղան փոքրիկ
Ձմեռային իր երազով։
Միտք է անում, ժպտում է նա,
Խոսում ձայնով անլսելի.
Տեսնես՝ ի՞նչ են անում հիմա
Կաքավները մեր ձորերի։
Ուտելի՞ք է արդյոք ճարում
Նապաստակը անտեր ու խեղճ,
Ի՞նչ է անում վազը սիրուն,
Որ թաղված է մեր այգու մեջ։
Ի՞նչ են անում ծիլերն արև,
Ու սերմերը՝ ցանված հողում,
Ծառերը մերկ ու անտերև
Ինչու՞ համար են դողդողում։—
Եվ թվում է նրան մի պահ,
Թե մայր հողն է իր հետ խոսում.
Այդ բոլորը, փոքրիկ տղա,
Գարնան գալուստն են երազում։



# Լույսը

Մութ երկինքը նոր ձյունից
Շղթաներ է օրորում,
Ձյան տակ՝ կախված մի սյունից,
Մի լապտեր է երերում։
Ճամփին փռում է անձայն
Մի երազուն լույսի գետ,
Փաթիլները իջնող ձյան
Ծիծաղում են նրա հետ։
Ձմռան խաղաղ երկնի տակ,
Երազներով մայր հողի,
Լույսը դարձած մի պահակ,
Նինջն է հսկում մեր գյուղի։
Ձմռան գիշերն է սահում,
Իսկ նա աստղի պես անբիծ,
Ոչ ցրտից է վախենում,
Ոչ էլ մութից ու ամպից։
Վառվում է նա աներկյուղ,
Լուսավորում շուրջը սյան,
Եվ չեն գալիս դեպի գյուղ
Անտառից գայլ ու գազան...
Դու էլ, մանկիկ իմ խնդուն,
Լույս տուր կյանքին անխնա,
Չարությունն այս աշխարհում
Թող քեզանից վախենա։

Նկ. ՀՐԱԶՅԱՆ ԽՈՒԴԱՎԵՐԴՅԱՆԻ

ԻՆՉՈՒԿ

ՀԵՏԱՔՐՔՐԱՍԵՐԻ ԱԿՈՒՄԲ

ԻՆՉՈ՞Ւ ԵՐԲ ՈՐՏԵ՞Ղ

*Սիրելի խմբագրություն, ինձ շատ է հետաքրքրում, թե հյուսիսափայլը բնության ինչպիսի երևույթների արդյունք է, ե՞րբ և որտե՞ղ է լինում:*

ԳԱԼՍՏՅԱՆ ԱԼԵՔՍԱՆԴՐ

Լեռնային Ղարաբաղ, Մարտակերտի շրջան, Վանքի միջնակարգ դպրոց, 7-րդ դասարան



# Ի՞ՆՉ Է ՀՅՈՒՍԻՍԱՓԱՅԼԸ

Սիրելի Ալեքսանդր, ավելի ճիշտ կլինի ասել՝ բևեռափայլ, որովհետև բնության այդ երևույթը տեղի է ունենում ոչ միայն Հյուսիսում: Երկրի վրա գոյություն ունի երկու գոտի, որտեղ բևեռափայլերն ավելի հաճախ են նկատվում. մեկը՝ Հյուսիսային կիսագնդում, իսկ մյուսը՝ Հարավայինում: Հյուսիսային գոտում նկատվող բևեռափայլին հաճախ ասում են հյուսիսափայլ: Բևեռափայլի հյուսիսային գոտին անցնում է Նորվեգիայի ափերով, Նոր Երկրով, Չելյուսկինի հրվանդանի հարավային մասով, Ալյասկա թերակղզու և Կանադայի հյուսիսով, Գրենլանդիայի հարավային եզրով:

Բևեռափայլերը Երկրի մթնոլորտի սառը լուսարձակումներ են հարյուրավոր կիլոմետր բարձրության վրա: Այդ լուսարձակման բնույթը նման է գազալուսային խողովակներում էլեկտրական հոսանքի առաջացրած գազերի լուսարձակման բնույթին:

Արեգակի ընդերքից շարունակ շիկացած գազեր են դուրս ժայթքում: Դրանք էլ դեպի տիեզերական տարածություններն ու հատկապես Երկիրն են ուղարկում աչքի համար անտեսանելի ուլտրամանուշակագույն ճառագայթների ուժեղ հոսանքներ և մանրագույն մասնիկների հեղեղներ: Այդ ճառագայթներն ու մասնիկները նկատելի ազդեցություն են թողնում երկնային երևույթների վրա: Դրանց շնորհիվ է, որ Երկրի մթնոլորտի բարձր շերտերում նոսրացած օդը լույս է արձակում: Երկրագնդի մագնիսական դաշտը վանում է Արեգակից եկող էլեկտրական մասնիկները, երբ դրանք մոտենում են Երկրին: Այդ մասնիկները ընկնում են մեր մթնոլորտի մեջ, Երկրի մագնիսական բևեռների մոտերքում, և դրա համար էլ բևեռափայլերը մեծ մասամբ այնտեղ են տեղի ունենում: Հյուսիսային կիսագնդում բևեռափայլերը տարբերվող լուսավոր, հաճախ գույնզգույն ճառագայթների կամ շերտերի ձևով երևում են գիշերը՝ հյուսիսային կողմում: Որքան դիտողը հեռու է գտնվում հասարակածից, այնքան բևեռափայլերը ավելի պարզ ու հաճախակի են երևում: Հարավային կիսագնդում ճիշտ նույնպիսի բևեռափայլեր նկատվում են երկնքի հարավային կողմում՝ կեսգիշերին:

Ահա այն ամենը, ինչ համառոտակի կարելի է ասել բևեռափայլերի մասին:

## ԱՄՊՐՈՊՆԵՐԻ ՄԱՍԻՆ

*Հարգելի խմբագրություն, խնդրում ենք պատասխանել մեզ հետաքրքրող հետևյալ հարցերին.*

*1. Ինչու՞ ծովերի և օվկիանոսների վրա ամպրոպ չի առաջանում:*

*2. Ինչու՞ աշնանը և ձմռանը ամպրոպ չի լինում:*

Եղեգնուտի դպրոցի 8-րդ դասարանի մի խումբ կոմերիտականներ

Սիրելի կոմերիտականներ, ձեր երկու հարցադրումներն էլ սխալ են. ամպրոպներ լինում են նաև ծովերի և օվկիանոսների վրա: Ամպրոպներ առաջանում են ոչ միայն ամռանը, այլև՝ ձմռանը:

Ամպրոպը մթնոլորտային երևույթ է, որն առաջանում է ջրի գոլորշու ուժեղ խտացումից: Ամպրոպի առաջացման պատճառն կապված է օդի ուղղահայաց ուժեղ հոսանքների զարգացման ու անձրևաբեր ամպերի կուտակումների հետ և ուղեկցվում է հանկարծակի հորդառատ տեղումներով (անձրև, կարկուտ, երբեմն էլ՝ ձյուն): Այստեղ մեծ դեր է խաղում կոնվեկցիան: Երկրագնդի մակերևույթի մոտ օդը ուժեղ տաքանում է, և թույլ քամու առկայության դեպքում տաք օդի շերտը մղվում է ավելի սառ ու խոնավ շերտի տակ:

Ցամաքում ամպրոպները ավե-

նաշատը լինում են կեսօրից հե-տո, երբ երկրագունդը բավականին տաքացած է, իսկ ծովերի և օվ-կիանոսների վրա ամպրոպները լինում են գիշերվա երկրորդ կե-սին, որովհետև ջրի և օդի ջեր-մաստիճանների խիստ տարբերու-թյունը նկատվում է հատկապես գիշերները: Ամպրոպների 80 տո-կոսը ընկնում է ամառվա երկրորդ կեսին: Ձմռանը ամպրոպները ամենից ավելի հաճախ նկատվում են կղզիներում և ծովերին մոտ գտնվող վայրերում: Ամենաշատը ամպրոպներ լինում են արևա-դարձային երկրներում. տարեկան մինչև 200 օր: Սովետական Միու-թյունում ամենաքիչը ամպրոպ-ներ լինում են Հյուսիսում. օրի-նակ՝ Կարելիայում տարեկան մի-ջին հաշվով լինում է 9 ամպրոպ: Որքան իջնում ենք դեպի հարավ, դրանց թիվը շատանում է: Ամպ-րոպներ համեմատաբար ավելի հաճախ է նկատվում լեռնային վայրերում: Երկրագնդի վրա միաժամանակ տեղի է ունենում մինչև 1800 ամպրոպ:

Մինչև հիմա էլ գոյություն չու-նի ամպրոպների առաջացման փորձնական սխեմա և լրիվ չի պարզաբանված ամպրոպային էլեկտրականության առաջացման հարցը: Հնարավոր է, որ տեղի են ունենում մի շարք պրոցես-ներ, որոնք էլեկտրականացնում են ջրի կաթիլներն ու սառցի բյու-րեղները, իսկ դրանց տարաբա-ժանումից էլ առաջ են գալիս տարբեր տեսակի լիցքեր:

## ՓՐԿԻՉ ԴԵՂԸ

Օտտո անունով այս ութոտնուկն ապրում է Արևմտյան Բեռլինի ակվարիումներից մեկում: Վերջերս նա ծանր հիվանդացավ և մահից փրկվեց շնորհիվ այն բանի, որ կերավ իր սեփական շոշափուկներից մեկը:



Մեքսիկացի ինժեներ Անդրեյ Խեբբերան Հունիայան մի օր հանգստանում էր ամայի ծովափին, Տամպեկոյի մոտերքում: Հանկարծ նա նկատեց, թե ինչպես կրիաների անհամար հոտեր դուրս եկան ափ և սկսեցին ձու ածել:

Հայտնի էր, որ ամեն տարի կրիաները մեկնում են երկարատև ճամփորդության և անսխալ հասնում իրենց սիրելի վայրը, որ ձու դնեն: Բայց թե որտեղ էին այդ վայրերը, գիտնականները երկար ժամանակ չգիտեին: Միայն ենթադրում էին, որ դըրանք Տեխասի և Վերա-Կրուց նահանգի միջև են: Եվ ահա ականատեսի բախտը բերեց. նա հայտնաբերեց այդ վայրերից մեկը: Իսկ կրիաներն ինչպե՞ս են հասնում այդ և ուրիշ վայրեր: Գիտնականները ձեռնարկեցին տարբեր միջոցներ, որպեսզի իմանան նրանց ուղևորության ճանապարհները:



## ԻՆՉՊԵ՞Ս ԵՎ Ի՞ՆՉ ԵՆ ՏԵՍՆՈՒՄ

*Հայրը նայում է մարգագետնում վազվզող իր աղջկան: Բարձր խոտերը խանգարում են փոքրիկին, իսկ բազմերանգ ծաղիկները շեղում են նրա ուշադրությունը: Նա կանգնում է, պոկում մի մեծ ծաղիկ, որի թերթերի վրա իր թևիկներն է շարժում բզեզը:*

*Հայրը տեսնում է այդ բոլորը: Միաժամանակ նա տեսնում է երկնքում սահող թեթև ամպերն ու մոտակա ճանապարհի վրա բարձրացած փոշին:*

*Բայց ի՞նչ է տեսնում այդ մարդու ոտքերի մոտ կանգնած շունը: Որքան էլ զարմանալի է, սակայն շունը բոլորովին էլ այն չի տեսնում, ինչ տեսնում է այդ պահին նրա տերը: Շունը բնությունն ու առարկաները տեսնում է միայն սև ու սպիտակ գույներով: Դրա փոխարեն խորությունը և առարկաների գծագրությունը նա ավելի լավ է տեսնում, քան որևէ այլ կենդանի: Բոլոր կենդանիների պես, շունը լավ է տեսնում շարժվող առարկաները: Եվ կարծես, նապաստակներն ու եղջերուները գիտեն դա և ամենավճռական պահին «մեխվում» են տեղում: Կենդանին անշարժանալիս անհայտանում է գազանի աչքից, չէ՞ որ գազանները անշարժ առարկաները չեն տեսնում: Հենց այդ է պատճառը, որ բվենը երբեմն ինքն է շարժում գլուխը, որպեսզի շարժման էֆեկտ ստեղծի: Ճիշտ այդպես, որոշ շներ անշարժ առարկայի նայելիս շարժում են գլուխները: Գորտերը, միջատները և ձկների որոշ տեսակներ տեսնում են միայն շարժվող առարկաները, որովհետև նրանց աչքերն անշարժ են:*

*Թռչունները թռչում են շատ արագ, ուստի նրանց աչքերը պետք է ազդանշանները իսկույն հաղորդեն ուղեղին: Թռչելիս ժամանակ չի լինում զննելու ամբողջ անտառը կամ գիշատչի ամբողջ մարմինը: Դրա համար էլ թռչունի աչքերը հարմարված են տեսնելու գիշատիչի և կամ անտառի շատ բնորոշ մասերը միայն:*

*Ծիծեռնակը, ջրածիծառը և ուրիշ մի քանի թռչուններ երկինքը տեսնում են որպես բազմատեսակ միջատների մի հարուստ հավաքածու: Իսկ մար-*



# ԿՐԻԱՆ... ՃԱՆԱՊԱՐՀՈՐԴ-








Տասը մետրանոց մի պարան ամրացրին կրիայի պատյանին: Պարանի մյուս ծայրին կապեցին թեթև պլաստմասսայե կարթախցան: Իսկ հինգ մետրանոց պարանով էլ դրան միացրին հելիումով լցված վառ կարմիր ռետինե անոթ: Նավակից կամ ուղղաթիռից հետևում էին կրիաների շարժմանը: Բայց այդպիսի փորձարկում կատարելը շատ դժվար էր: Հենց որ մի ձկնորսական բարկաս կամ տուրիստական նավակ նկատում էր այդ կարմիր անոթը, փորձը անհաջողության էր մատնվում: Գիշերը անհնար էր հետևել կրիաներին: Փորձեցին անոթին էլեկտրական լամպ ամրացնել, բայց այդ էլ վախեցնում էր կրիաներին, և փորձը նորից ձախողվում էր: Իսկ որքա՜ն էին խանգարում այդ փորձերին փոթորիկներն ու արևադարձային անձրևները:

Որոշեցին օգտագործել ռադիոն: Կրիայի պատյանին ամրացրին մարտկոցներից սնվող հերմետիկ ռադիոհաղորդիչներ: Կրիան լողանալիս 30 րոպե մնում է ջրի տակ, իսկ 3 րոպե՝ ջրի երեսը: Այդ երեք րոպեի ընթացքում ճշտվում է նրա դիրքը: Ռադիոյի միջոցով ստացված արդյունքները գիտնականներին հնարավորություն տվեցին քարտեզի վրա նշել կրիաների շարժման ուղղությունը: Գիտնականները պարզեցին նաև, որ կրիաները ունեն կողմնորոշվելու մեծ զգացողություն: Կրիաների մոտ հայտնաբերեցին գեղձեր, որոնք արտադրում են հոտավետ հեղուկ, որը օգնում է նրանց կողք-կողքի ընթանալ մի ճանապարհով:

Ծովային կրիաների տեղաշարժման ուսումնասիրությունը նոր է միայն սկսվել, և հարկ կլինի շատ ջանքեր գործադրել՝ լուծելու բնության այդ խորհրդավոր առեղծվածը:

## ԿԵՆԴԱՆԻՆԵՐԸ

*դիկ տեսնում են... դատարկ երկինք: Այդ միջատները մեզ համար գոյություն չունեն: Նրանք չափազանց արագ են թռչում, և մենք չենք տեսնում:*

*Թռչունները ունեն ևս մի հատկություն. որքան ավելի արագ է միջատի շարժումը, այնքան ավելի լավ են տեսնում նրան:*

*Դուք գիտե՞ք, թե ինչպես են դասավորված ձիու բիբերը, հորիզոնական: Իսկ ինչո՞ւ: Բիբերի այդպիսի դասավորության դեպքում տեսադաշտի անկյունը մեծանում է: Դա շատ կարևոր հանգամանք է հարթավայրերում բնակվող կենդանիների համար, որտեղ հարկավոր է ժամանակին նկատել թշնամուն, հենց որ նա երևա հորիզոնում:*

*Իսկ աղվեսների և կատուների բիբերը, ընդհակառակը, դասավորված են ուղղահայաց դիրքով: Այդ կենդանիները իրենց որսը փնտրելիս ավելի հաճախ վեր ու վար են նայում:*

*Զարմանալի աչքեր են չորսաչքանի ձկան աչքերը: Այդ ձուկը ապրում է ջրի մակերեսին, նրա աչքերը թաղանթով բաժանված են երկու մասի: Աչքի վերին մասը կարող է տեսնել այն ամենը, ինչ կատարվում է օդում, ներքինը՝ ջրում: Այդ ձուկը միաժամանակ տեսնում է և՛ բարձր երկնքում ճախրող թռչուններին, և՛ ջրի խորքում լողացող ձկներին:*

*Բայց ամենահիանալի աչքերով օժտված է մեղուն: Գիտնականները ապացուցել են, որ մեղուները նկատում են միայն բացված ծաղիկները, իսկ թառամածներն ու չբացված կոկոնները չեն տեսնում: Դրա համար էլ մեղվի աշխարհը կազմում են բացարձակապես բացված զանգածաղիկներն ու շուշանները, մանուշակներն ու խնձորածաղիկները: Դեռ ավելին, մեղվի աչքերը ավելի մեծացնում են իրենց տեսադաշտի առարկաները, ստեղծելով տեսողական ավելի մեծ էֆեկտ: Մեղվի տեսողությունը հարըստացնում է քամին, օրորվող ծաղիկներն ավելի լավ է տեսնում: Հետաքրքիր պատկեր են ներկայացնում իրենցից այգիներըն ու դաշտերը, որովհետև մեղուն տեսնում է ուլտրամանուշակագույն ճառագայթներ: Այն դեպքում, երբ մարգագետինները մեզ համար սպիտակավարդագույն են, մեղվի համար դրանք շողում են ծիրանագույն օղակներով, որոնք ընդգծում են նեկտարով հարուստ տեղերը:*

Գրպանի այս ռադիոընդունիչը պարզ կառուցվածք ունի և այն կարելի է հեշտությամբ հավաքել: Առանց փոփոխելու էլեմենտների արժեքները, նրանում կարելի է օգտագործել 20-ից մինչև 100 ց ուժեղացման գործակից ունեցող տրանզիստորներ: Դա հեշտացնում է աշխատանքը:

Սխեման պատկերված է մեր ամսագրի 20-րդ էջում:

Դա 2 V 3 տիպի ուժեղացման սխեմա է: Պարունակում է $T_1$ $T_2$ տրանզիստորներից կազմված բարձր հաճախականության երկու կասկադ, կիսահաղորդչային $Д_1$ դիոդից՝ դետեկտոր և $T_1$ $T_1$ տրանզիստորներից կազմված երկու ցածր հաճախականության կասկադ:

$T_1$ $T_2$ տրանզիստորները ուժեղացնում են բարձր հաճախային և ցածր հաճախային ազդանշանները: Այն կասկադները, որոնց մեջ մտնում են նրանք, կոչվում են ռեֆլեքսային կասկադներ: Սրանք պարզեցնում են ընդունիչի կառուցվածքը:

Ինչպե՞ս է աշխատում սխեման: Մագնիսական անտեննայով ընդունված ռադիոկայանի բարձր հաճախային ազդանշանը անջատվում է $L_1$ $C_1$ կոնտուրում: Կապի կոճի $L_2$ միջով նա մտնում է $T_1$ տրանզիստորի բազան (բարձր հաճախության առաջին ուժեղացիչը), ուժեղանում է նրանով, անջատվում $R_1$ բեռնավորման դիմադրության մեջ և այստեղ անցնում է $T_2$ տրանզիստորի բազան (բարձր հաճախության ուժեղացման երկրորդ կասկադ): Համապատասխան ուժեղացումից հետո բարձր հաճախային ազդանշանը անջատվում է երկրորդ կասկադի բեռնավորման՝ $L_3$ կոճի վրա:

$L_3$ կոճի միջով ազդանշանը ընկնում է դիոդային դետեկտոր $Д_1$-ի մեջ, փոխարկվում է ցածր (ձայնային) հաճախության, անջատվում $R_8$ բեռնավորման դիմադրության վրա և $C_4$ կոնդենսատորից ու $R_1$ դիմադրությունից կազմված շղթայով անցնում $T_1$ տրանզիստորի բազան: Ուժեղացման ցիկլը նորից կրկնվում է, այս անգամ ցածր հաճախության վրա:

$T_2$ տրանզիստորով ուժեղացնելուց հետո ցածր հաճախության լարումը անջատվում է $R_7$ բեռնավորման դիմադրության վրա և $C_7$ անջատող կոնդենսատորի միջով մտնում է $T_1$—$T_1$ տրանզիստորից կազմված և բարձրախոսի կոճի դիմադրությամբ բեռնավորված երկու կասկադի մասը:

Սխեմայի բոլոր ուժեղացման կասկադները պարունակում են հաստատուն հոսանքի համար տրանզիստորների ռեժիմները ավտոմատիկորեն կարգավորող և կայունացնող էլեմենտներ: Այդպիսի էլեմենտներ են $R_5$, $R_7$, $R_{11}$ դիմադրությունները $T_1$—$T_1$ տրանզիստորների էմիտերների շղթաներում և $R_3$, $R_6$, $R_{11}$, $R_{12}$ դիմադրությունները նրանց բազաների շղթաներում:

Այդ էլեմենտների շնորհիվ տրանզիստորների ռեժիմներն ավտոմատիկորեն կարգավորվում են և թույլ են տալիս օգտագործել տարբեր ուժեղացման գործակիցներ ունեցող տրանզիստորներ: Սխեմայում ռեժիմները կայունացնող էլեմենտները հեշտացնում են ընդունիչի հավաքումը:

«Պիոներ» ամսագրի խմբագրությունը հայտարարում է պատանի տեխնիկների մրցույթ՝ գրպանի ռադիոընդունիչ պատրաստելու համար: Մրցույթին կարող են մասնակցել բոլոր ցանկացողները: Ռադիոընդունիչները պետք է ներկայացնել խմբագրություն՝ «Ինչու» ակումբի ռադիոէլեկտրոնիկայի հանձնաժողովին՝ ոչ ուշ քան մայիսի 15-ը:

Սահմանված է առաջին և երկրորդ կարգի մեկական մրցանակ: Մրցանակակիրները կպարգևատրվեն արժեքավոր նվերներով. փոքրածավալ ռադիոընդունիչ (գործարանային)՝ լուսանկարչական ապարատ: Ամսագրում կտպագրվեն նրանց լուսանկարները:




## ԻՆՉ ՄԱՍԵՐ ԵՆ ԱՆՀՐԱԺԵՇՏ ԸՆԴՈՒՆԻՉԻ ՀԱՄԱՐ

| | |
|---|---|
| Տրանզիստոր П401 (П402, П403, П403А) | 2 հատ |
| Տրանզիստոր П13 (П13А, П14, П15, П16) | 2 |
| Դիոդ Д9В (Д1, Д2, Д9 սերիաներից ցանկացածը) | 1 |
| Ֆերիտե ձող Ф 600 (Д = 8, L 100 մմ) | 1 |
| Ֆերիտե օղակ Ф 600 (Д 10, d = 6, h 3 : 5 մմ) | 1 |
| Փոփոխական կոնդենսատոր «Տեմպ» | 1 |
| Կոնդենսատոր КДС М 6800 պֆ | 3 |
| Կոնդենսատոր ЭМ («Տեմպ») 2,0 : 3,0 մկֆ, 4 12վ ($C_3$,$C_5$) | 2 |
| Կոնդենսատոր ЭМ («Տեմպ») 5,0 : 10,0 մկֆ, 4 12վ ($C_1$ $C_7$ $C_{10}$) | 3 |
| Կոնդենսատոր ЭМ («Տեմպ») 10,0 : 50,0 մկֆ, 10 12վ ($C_{11}$) | 1 |
| Կոնդենսատոր КДМ 1500 պֆ | 1 |
| Դիմադրություն УЛМ (УЛН, МЛТ 0,5) 75 օհմ | 1 |
| Դիմադրություն УЛМ (УЛН, МЛТ 0,5) 2 կօհմ | 1 |
| Դիմադրություն УЛМ (УЛН, МЛТ—0,5) 2,2 կօհմ | 1 |



**№1 ՓԵՏՐՎԱՐ 1966**

## ՄՐՑՈՒՄ ԵՆ ԽՈՒԹԸ

Մեր դրուժինան մասնակցում է «Ծողացեք, լենինյան աստղեր» համամիութենական մրցությանը: Պիոներները կատարել են հետաքրքիր շատ աշխատանքներ. նրանք մասնակցում են ջերմոցի, բանջարանոցի, սպորտդահլիճի, լողավազանի, սպորտհրապարակի, ֆուտբոլի դաշտի բարեկարգմանը:

Աշակերտներից ոմանք նշանակվել են ինքնավար-դաստիարակներ, ավագ դաստիարակներ, քարտուղարներ, բուժքույրեր և այլն: Շաբաթվա 5-րդ օրը դպրոցի բոլոր աշխատանքները, բացի դիրեկտորից և ուսմասվարից, կատարում են ինքնավարները: Դպրոցում սահմանվել են միջդասարանային փոխանցիկ գավաթներ՝ լավագույն ննջարանի, դասարանի, ճաշարանի, ջոկատի լավագույն աշխատանքների, բարձր առաջադիմության համար:

Մեր ազատ ժամերն անցնում են շատ հետաքրքիր. պիոներների մի մասն աշխատում է սենյակում, մի մասը խաղում է բակում, մյուսներն էլ անց են կացնում խմբակային պարապմունքներ:

ԹՈՂԱՐՅԱՆ ԱՆԻՏԱ
*Կալինինի №27 գիշերօթիկ դպրոցի 8-րդ դասարան*

## ԳԱՎԱԹԻ ՀԱՄԱՐ

*«Պիոներ» ամսագրի գավաթը նվաճելու համար ամեն տարի մրցում են [illegible] մայրաքաղաքի պատանի վոլեյբոլիստները:*

*Այս անգամ մրցումներին մասնակցեցին աղջիկների 18 և տղաների 27 թիմեր: Համառ պայքարից հետո գավաթը նվաճեցին 42-րդ դպրոցի աղջիկների և 58-րդ դպրոցի տղաների թիմերը: Իսկ №№ 131, 73, 8, 68 դպրոցների թիմերը պարգևատրվեցին Երևանի քաղմարզկոմիտեի դիպլոմներով:*

*Զարմանալի է, որ Լենինյան շրջանից այս կարևոր մրցումներին ոչ մի դպրոց չմասնակցեց:*

ՊԻԱՍԵԹ





## ՊԱՏՄԱԿԱՆ ԽՆՁՈՐԵՍԿՈՒՄ

1965 թվականի նոյեմբերի 31-ը անմոռանալի օր է իմ հիշողության մեջ: Արշավի էինք գնացել պատմական Խնձորեսկ գյուղը: Ես շատ էի լսել լրագրերում ծավալած այդ գյուղի մասին, բայց չէի տեսել: Մենք թարմ ծաղկեփնջեր դրեցինք Մխիթար Սպարապետի շիրմաքարին, որի վրա հազիվ նշմարվում էին տառերը: Եղանք նաև բերդում, դիտեցինք ավերակները:

Վերջերս էլ դպրոցում կազմակերպեցինք վոլեյբոլի մրցումներ՝ նվիրված Հովիկի հիշատակին: Երկու տարի

## ՄԵՐ ՊԱՏԿԵՐԱՍՐԱՀԸ

*Ընդամենը մի քանի ամիս է անցել, ինչ «Պիոներ» ամսագրի խմբագրությունը մեր դպրոցին նվիրեց մեծ քանակությամբ գեղարվեստական նկարների վերատպումներ: Եվ մենք որոշեցինք դպրոցում կազմակերպել պատկերասրահ–ցուցահանդես: Աշակերտներին մեծ հետաքրքրություն պատճառեցին ռուս նկարիչներ Բրյուլովի «Լենինը», Վասիլևի «Պեյզաժը», հայտնագործի մեծ նկարիչ Մարտին-Հայրի «Սիմֆոնիա», ինչպես նաև [illegible]գայի, Վան-Գոգի, Պիսսառոյի և մյուսների ստեղծագործությունները:*

*Դասերից հետո և դասամիջոցներին աշակերտները հավաքվում են պատկերասրահում, խոսում իրենց սիրած նկարիչների և նկարների մասին, երբեմն էլ վիճում:*

Տրանզիստորային ռադիոընդունիչի սխեման

(տեքստը՝ 16-րդ էջում)

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Շապիկի առաջին էջը՝ նկ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ

Այս համարի հետ տրվում է անվճար հավելված՝ «Արայիկը կազդուրվում է» հեքիաթ-պիեսը:

## ՀԱՆԳՍՏԻ ԺԱՄԻՆ

### ՎԵՑ ԱՆՃՇՏՈՒԹՅՈՒՆ

Եթե ուշադրությամբ նայեք այս նկարին, ապա կհայտնաբերեք վեց անճշտություն, որ դիտավորյալ կերպով թույլ է տվել նկարիչը: Ի՞նչ սխալներ են դրանք:


Խմբագիր՝ Ս. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

**Խմբագրական կոլեգիա՝**

ԲԱՐԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Ա. (գեղարվեստական խմբագիր), ԽՈՍՅԱՆ Վ., ԹԱԳԵՎՈՍՅԱՆ Թ., ԽԱՆՋՅԱՆ Գր., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ Գ. (պատասխանատու քարտուղար), ՍԱՀԻՆՅԱՆ Ա., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս., ՔԱԼԱՆԹԱՐՅԱՆ Վ.

**Пионер**" на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Кармир банаки, № 41.
Հասցեն՝ Երևան, Կարմիր բանակի փողոց, № 41, հեռախոսներ՝ 2—44—83, 2—59—06:

ՎՖ 06758: Պատվեր՝ 65: Տպաքանակ՝ 21 900: Տպագրական 5 մամուլ: Ստորագրված է տպագրության 4/II. 1966 թ.: ՀՍՍՀ Մինիստրների սովետի մամուլի պետական կոմիտեի պոլիգրաֆարդյունաբերության գլխավոր վարչության պոլիգրաֆկոմբինատ: Երևան, Տերյան փ. № 91:

Գինը՝ 20 կ.




## ԽԱՉԲԱՌ

*ՈՒՂՂԱՀԱՅԱՑ.— 1. Ընտանի թռչուն: 2. «Զինգիզ խան» վեպի հեղինակը: 3. Շինանյութ: 4. Գետ՝ Ֆրանսիայում: 5. Վոլգա գետի վտակներից: 6. Ռադիոակտիվ էլեմենտ: 9. Չեխ նշանավոր կոմպոզիտոր: 10. Քաղաք՝ Կուրսկի մարզում: 13. Էլեկտրական լարվածության չափի միավոր: 14. Բանջարեղեն, որն օգտագործվում է նաև բժշկության մեջ: 15. Ջրանցման միջոց: 16. Ռազմական մեքենա: 19. Հին Հայաստանի մայրաքաղաքներից: 20. Միանիշ թիվ:*

*ՀՈՐԻԶՈՆԱԿԱՆ.— 3. Հայ թագավոր 10-րդ դարում: 5. Ընտանի կենդանի: 7. Անտառանյութ: 8. Քաղաք՝ հին Հայաստանում: 10. Հագուստ, որն օգտագործվում է բռնցքամարտության մեջ: 11. Հայրենական պատերազմի հերոսուհի: 12. Տարվա եղանակ: 13. Ծաղիկ: 15. Հունգարացի նշանավոր կոմպոզիտոր: 17. Ծովային կենդանի: 18. Անդամթերք: 19. Խ. Աբովյանի «Վերք Հայաստանի» վեպի հերոսներից: 21. Միրգ: 22. Փոքր բնակավայր:*

*Կազմեց Վ. ԳԱՍՊԱՐՅԱՆԸ*




# ՆԿԱՐՉԱԿԱՆ ՎԻԿՏՈՐԻՆԱ



Ինչպե՞ս է կոչվում այս նկարը և ո՞վ է նրա հեղինակը: Նկարիչն ստեղծագործել է 19-րդ դարի վերջին և 20-րդ դարի սկզբին: Մոսկվայի հայտնի նկարիչներից մեկի որդին է եղել: Այս նկարչին է պատկանում նաև «Երեկույթ» կտավը, որը նվիրված է հեղափոխական երիտասարդության կենցաղին:



Այս դիմանկարի հեղինակը նույնպես նշանավոր նկարչի որդի է եղել: Ապրել է Թբիլիսիում: Պետերբուրգի գեղարվեստական ակադեմիան 1841 թ. նրան տվել է դիմանկարչի կոչում: Կյանքի վերջին տարիները նկարիչն անցկացրեց Թավրիզում, որտեղ և մեռավ 1884 թվականին:

Ո՞վ էր այդ հայ նկարիչը. ինչպե՞ս է կոչվում այս դիմանկարը:

